# Տերևաթափ

Հ. ՍԱՀՅԱՆ

Տերևնե՞ր են, չգիտես,
Թե հավքեր են ոսկերն,
Որ թռչում են այսպես
Ու սլանում են թեթև,
Որ սպիտակ, սպիտակ
Եղյամն իրենց թևերին՝
Թափառում են բակե-բակ
Ու թառում են քիվերին:
Քիվերից վար իջնելով
Ուզում են գալ, մտնել հաշտ,
Մեկ էլ դառնում երամով
Ու գնում են դեպի դաշտ:
Հեռու մարգերն են գնում,
Ջուրն են մտնում խշշոցով,
Առվի ջրերն են ընկնում,
Որ նրանց հետ գնան ծով:
Որտեղ դուռ են տեսնում բաց,
Նրա ճամփան են բռնում,
Կարծես իրենց մեջ հասած
Անուշ մրգերն են փնտրում:
Հասնում են պաղ լճերին,
Ջրերի մեջ թպրտում,
Մինչև գալիս գիժ քամին
Նրանց ափ է շպրտում:
Մեկ էլ հանկարծ, դրա՜նց տես,
Սուլում են ու ծիծաղում,
Ցանկապատի տակ ասես
Պահմտոցի են խաղում:
Ճախրում, թռչում են քո դեմ,
Չեն հեռանում քո ճամփից,
Հազար անգամ կարծես թե
Կուտ են կերել քո ափից...
Դե, նայեցե՛ք, նայեցե՛ք
Այս ոսկեգույն հեղեղին.
Տերևնե՞ր են, չգիտես,
Թե թռչուններ են դեղին:
Մեկ ճախրում են թևաբաց,
Մեկ իջնում են ու վազում...
Եվ մերկ ծառերը նրանց
«Մնաք բարով» են ասում:

Նկ. Ռ. ՆԱՆՈՒՇՅԱՆԻ

# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

№ 10

ՀՈԿՏԵՄԲԵՐ

1956 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 28-ՐԴ ՏԱՐԻ


Կանաչապատում են սիրելի դպրոցի շրջակայքը:

*Լուսանկար՝ Հ. Հեքեքյանի*

# ԴԵՊՔ ՏՐԱՄՎԱՅԻ ՎԱԳՈՆՈՒՄ

ԲՈՐԻՍ ԵՄԵԼՅԱՆՈՎ

Նկ. Գ. ԽԱՆՋՅԱՆԻ

Տրամվայի կցորդ վագոնի սրահակը լեփլեցուն էր մարդկանցով։ Նիկիտյան դարբասների մոտ գտնվող կանգառում նորից մարդիկ խցկվեցին։ Զոլավոր պարկը ուսին մի պառավ, զամբյուղը ձեռքին մի ծերունի, հեծելազորային շինելը հագին և կուբանկա փափախը գլխին, բարձրահասակ ու ամրակազմ մի մարդ. և էլի մի մարդ՝ սուր քթով, մինչև օձիքը կոճկած վերարկուով և մոխրագույն գլխարկով։

Բոլորից հետո վագոն մտավ գրքերը կռնատակին, աղքատ հագնված մի պատանի։ Նրան անմիջապես սկսեցին հրմշտել ու հրել դեպի սրահակի կենտրոնը։

Շփոթված նայելով տոմսավաճառին, նա սկսեց պրպտել գրպանները մանր դրամ գտնելու համար։ Եվ երջանիկ ժպտաց, երբ դրամը գտնվեց։

Վագոնից քիչ մարդ դուրս եկավ։ Անցնելով Պուշկինյան հրապարակը ու Պետրովյան դարբասները, տրամվայն սկսեց բլրակից ցած իջնել դեպի Տրուբնի հրապարակը։ Եվ հենց այստեղ, չնայած սաստիկ նեղվածքին ու հրմշտոցին, մոխրագույն գլխարկով ուղևորը նկատեց, որ հեծելազորային շինել հագած մարդը զգույշ մտնում է աղքատիկ հագնված տղայի գրպանը։

Գողը բռնվեց հանցանքի վայրում։ Բոլորը սկսեցին աղմկել ու վրդովվել։ Տրամվայը կանգ առավ։ Սրահակում հավաքված բազմությունը արագ թափվեց փողոց։ Երբ տրամվայը շարժվեց, միայն մի ծերուկ զամբյուղով թրխկացրեց գրպանահատի մեջքին և հանգիստ տեղավորվելով դատարկ սրահակում, շարունակեց իր ճանապարհը։ Փողոցում բազմությունն այնպես աճեց ու սեղմվեց, որ հերթապահ միլիցիոները առանց հասկանալու եղելությունը, երկար ժամանակ խնդրում էր. «Քաղաքացիներ, լռություն, քաղաքացիներ, կարգ պահպանեցեք»։

Աղմկում ու զայրանում էին աղջիկները, տղաները, մոխրագույն գլխարկով մարդը, բայց թվում էր ամենից չարացածը զոլավոր պարկով պառավն էր, որը փոքրիկ, կուչ եկած բռունցքները թափահարելով, առաջ էր խցկվում դեպի գրպանահատը։

— Ո՞ւմ վրա էիր աչք դրել,— գոռգոռում էր պառավը,— ումնի՞ց էիր ցանկանում վերջին շապիկը խլել...

Եվ որքան էլ շինելավոր մարդը աշխատում էր ապացուցել, որ տրամվայում ուրիշի վրայից վերջին շապիկն հանելը անմտություն է, միևնույն է, ոչ ոք չէր հավատում նրան։

Բազմությունն ավելի ու ավելի էր աղմկում։

Այդ ժամանակ միլիցիոները խստորեն ձեռքը թափահարեց և հանցագործության հանգամանքները պարզաբանելով, գողից պահանջեց փաստաթղթերը։

Գողը ձեռքը գրպանը տարավ և հանեց մի փոքրիկ դարչնագույն գրքույկ։

— Անձնագիրը մոտս չի,— շփոթված ասաց նա,— ինձ մոտ միայն Սովետական գրողների միության անդամության տոմսն է, ես ինքս էլ գրող եմ և անվանում են ինձ Արկադի Գայդար։

— Ճանաչո՞ւմ ենք այդպիսի գրողներին,— առաջինը բացագանչեց բարկացկոտ պառավը։

Հետևելով նրան, բոլորն էլ սկսեցին բղավել։

Միայն տուժած տղան էր այդ աղմուկ-աղաղակի մեջ կանգնել լուռ ու անվրդով։

— Ո՞վ եք դուք և ի՞նչ են ձեզանից գողացել, ընկեր,— սիրալիր հարցրեց նրան միլիցիոները։

Պատանին շիկնեց և պատասխանեց, որ գրպանահատը այստեղ չարաչար սխալվել է։

— Ես նորեկ եմ,— ասաց տղան,— դեռ երեկ եմ ընդունվել բժշկական ինստիտուտի առաջին կուրսը։ Իմ փողերը ես վաղուց ծախսել եմ, իսկ թոշակ դեռ չեմ ստացել։

— Կապիտալիստ է գտել ավազակը,— բարկացած ասաց պառավը, իսկ միլիցիոները հանդիմանորեն շարժեց գլուխը և պատանուն այնուամենայնիվ առաջարկեց ստուգել գրպանները, թե արդյոք չե՞ն հանել փաստաթղթերը կամ էլի որևէ թանկարժեք իր։

Պատանին բարեխղճորեն շուռ տվեց գրպանները, և հենց այդ ժամանակ բոլորի աչքի առջև մայթի վրա դանդաղ ցած ընկավ տրորված մի հիսունանոց։

— Սա իմ փողը չի... ինձ մոտ փող չկար,— անհանգիստ ասաց պատանին։

Բազմության մեջ խառնաշփոթություն առաջացավ։ Ամենքը սկսեցին ուշադիր նայել գրպանահատ-գրողին, բայց նա լուռ, կախ էր գցել գլուխը և ձեռքերի մեջ տրորում էր կուբանկա փափախը։

Հին ու փորձված մարդ էր հերթապահ միլիցիոները, շատ բան էր տեսել իր երկար ու դժվարին ծառայության ընթացքում, բայց այնպիսի գրպան[illegible]ներ ուրիշների դատարկ գրր-

պաններըը և փող թողներ այնտեղ, դեռ չէր հանդիպել:

Մի անգամ ևս միլիցիոները բարձրացրեց ձեռքը, և երբ անսովոր լռություն տիրեց, ասաց, որ հանցագործության հանգամանքների բացակայության պատճառով նա ազատում է ընկեր գրողին, իսկ վկաներին և մյուս ներկա գտնվողներին խնդրում է գնալ իրենց տները:

Կամաց-կամաց ամբոխն սկսեց ցրվել: Ամեն մեկը հեռանում էր այդտեղից, յուրովի մեկնաբանելով եղելությունը:



Ուզեց հեռանալ նաև գրող Արկադի Գայդարը, բայց պառավը բռնեց նրա թևքից և նստելով մոտակա այգու ճաղերի մոտ գտնվող աստիճանների վրա, քանդեց իր գոլավոր պարկի կապը, այնտեղից հանեց մի մեծ կարմիր խնձոր ու մեկնեց Գայդարին.

— Վերցրո՛ւ, վերցրո՛ւ, բարի մարդ,— ասաց բարկացկոտ պառավը,— վերցրո՛ւ, խնձորը շատ մեծ է, ցավոք սրտի ես այն չեմ կարող ծածուկ քո գրպանը խոթել... Միևնույն է, դու կնկատես:

## ՓՈՔՐԻԿ ՊԱՏՄՎԱԾՔՆԵՐ

ԱՐԿԱԴԻ ԳԱՅԴԱՐ

Նկ. Գ. ԽԱՆՋՅԱՆԻ

### ՍՈՎԵՏՍԿԱՅԱ ՀՐԱՊԱՐԱԿԸ

Այդ 1919 թվականին էր, կարծեմ փետրվարին: Նոր էր լրանում իմ տասնհինգ տարին:

Եվ ահա հրամանատարը, որը բարեսրտությամբ ինձ մերթ հանձնակատար, մերթ համհարզ էր կոչում, ասաց.

— Ես մեկնում եմ Սովետսկայա հրապարակ: Հերոս, մի՛ մռայլվիր: Քեզ էլ կվերցնեի, բայց մեքենայում բենզին չկա, ես էլ ձիով եմ գնում:

Բայց ես արդեն գիտեի, թե ինչու են զորքերը դեպի հրապարակ շտապում: Թռա տեղիցս ու հարցրի. «Ընկեր հրամանատար, ինձ համար դժվար է, թույլ կտա՞ք ես էլ ձիով գամ ձեզ հետ»:

Նա նախազգուշացրեց: Տե՛ս, հա՜...

Ես վազեցի ախոռը մի ավելի հանգիստ ձի ընտրելու, որովհետև թամբին դեռ բոլորովին վատ էի դիմանում:

Բայց այն ձիերը, որ հանգիստ էին, խղճուկ ու քոսոտ յաբուներ էին:

Ես թամբեցի մի բարձր, կատաղի նժույգի, որը հրապարակի վրա երևաց թե չէ, սկսեց փռնչացնել, դունչը թեքել և գավակով հրել մյուսներին...

Միտինգ էր, Մոսսովետի պատշգամբից հանդես էին գալիս շատ երկրների կոմունիստներ:

Հեծյալները բարկությամբ նայելով ինձ, կամաց նախատում էին և գողունի բզում իմ նժույգին, որը կոշիկի ծայրով, որն էլ՝ մտրակի կոթով:

Հանկարծ ամբողջ հրապարակը լռեց. պատշգամբ դուրս եկավ Լենինը: Ուրախ բարձրացա ա-

պանդակներին, բայց իմ նժույգը վեր թռավ, փնչացրեց, ընկրկեց...

Լենինի կարճ ճառի ժամանակ, իմ բոլոր ուժերը, ողջ կարողությունը ծախսում էի միայն նրա համար, որպեսզի իմ նժույգը թեկուզ մի կերպ հանգիստ կանգնի և եթե ոչ ինձ, ապա գոնե մարդկանց թույլ տա լսելու մեծ առաջնորդի խոսքը։

Երբ Լենինը խոսքն ավարտեց, և հրապարակը թնդաց երաժշտությունից ու բացականչություններից, ես գայրացած և արտասվելով՝



մտրակով դաղեցի նժույգին. նա դուրս թռավ շարքից և սլացավ ուր աչքը կտրում էր, դատարկ, ձյունակույտերով ծածկված փողոցներով։

Այլևս Լենինին ես երբեք չլսեցի և չտեսա։ Բայց հենց այդ օրը մարդիկ, ինչ-պես կարող էին, նրա ճառը պատմեցին ինձ։ Ես էլ միտք արի, թույլտվություն խնդրեցի հրամանատարից և շուտով նրա կարմիրբանակայինների հետ միասին մեկնեցի ռազմաճակատ՝ հեռավոր Տամբովյան բանակը։

## ՄԱՐՈՒՍՅԱՆ

Լոտեսն անցավ ճահիճը, հագավ կարմիրբանակայինի համազգեստ և դուրս եկավ ճանապարհը։

Մի աղջիկ տարեկանի արտում տերեփուկներ էր հավաքում։ Նա մոտեցավ և խնդրեց դանակը, որպեսզի հավասարեցնի ծաղկեփնջի ցողունները։

Լոտեսն աղջկան դանակ տվեց, հարցրեց, թե ինչ է անունը, և լսած լինելով, որ սովետական երկրում մարդիկ ուրախ են ապրում, սկսեց ծիծաղել և ուրախ երգեր երգել։

— Մի՞թե դու ինձ չես ճանաչում,— զարմացած հարցրեց աղջիկը։— Ես Մարուսյան եմ՝



լեյտենանտ Եգորովի աղջիկը։ Եվ այս ծաղկեփունջն էլ տանում եմ հայրիկիս։

Նա խնամքով ուղղեց ծաղիկները, իսկ աչքերում արցունքներ փայլեցին։

Լոտեսը դանակը խոթեց գրպանը և ոչ մի խոսք չասելով, հեռացավ։

Ուղեկալում Մարուսյան ասաց.

— Ես հանդիպեցի մի կարմիրբանակայինի։ Ասացի անունը ինչ է, տարօրինակ է, որ նա ծիծաղեց և երգեր երգեց։

Այն ժամանակ հրամանատարը մռայլվեց, կանչեց հերթապահին և հրամայեց այդ «ուրախ» մարդուն խմբովին հետապնդել։

Հեծյալները սլացան, իսկ Մարուսյան դուրս եկավ զառիթափ ափը և իր ծաղկեփունջը դրեց հոր թարմ գերեզմանին, որը հենց երեկ էր սպանվել սահմանային հրաձգության ժամանակ։

## ԽԻՂՃԸ

Նինա Կառնաուխովան հանրահաշվի դասը չէր պատրաստել և որոշեց դպրոց չգնալ։

Բայց որպեսզի ծնողները պատահաբար չտեսնեին, թե ինչպես է նա աշխատանքային օրվա ընթացքում գրքերը թևի տակ թրևում քաղաքում, Նինան թաքուն գնաց պուրակ։

Նախաճաշիկի ծրարը և գրքերի կապոցը դնելով թևի տակ, նա վազեց գեղեցիկ թիթեռնիկի

ստևից և դիպավ մի փոքրիկի, որը բարի, զվարթահավատ աչքերով նրան էր նայում:

Իսկ քանի որ նա ձեռքին բռնել էր այբբենարանը, մեջը դրված տետրակի հետ միասին, ապա Նինան գլխի ընկավ, թե բանն ինչումն է և որոշեց նրան ծաղրել.



— Դժբախտ գործալիք, — խստորեն ասաց նա:— Երեխա տեղով դու արդեն խաբո՞ւմ ես ծնողներիդ և դպրոցին:

— Ո՛չ,— զարմացած պատասխանեց փոքրիկը:— Ես պարզապես գնում էի դաս: Բայց այստեղ, անտառում մի մեծ շուն է քարշ գալիս: Նա հաչեց, և ես մոլորվեցի:

Նինան մռայլվեց: Այդ փոքրիկն այնքան ծիծաղելի էր և բարեխիղճ, որ նա բռնեց նրա ձեռքը և տարավ:

Իսկ Նինայի գրքերի կապոցն ու նախաճաշը այդպես էլ ընկած մնացին թփի տակ, որովհետև դրանք փոքրիկի ներկայությամբ վերցնելը այժմ ամոթալի կլիներ:

Ճյուղերի միջից արագ և աննկատելի կերպով դուրս պրծավ շունը, գրքերին ձեռք չտվեց, բայց նախաճաշը կերավ:

Նինան վերադարձավ, նստեց և սկսեց լալ: Ո՛չ: Նա չէր ցավում գողացված նախաճաշի համար: Այգում այնքան լա՜վ էին երգում թռչունները, բայց շատ էր ճնշվում նրա սիրտը. խիղճը անխնա տանջում էր նրան:

## ՎԱՍԻԼԻ ԿՐՅՈՒԿՈՎ

Կարմիրբանակային Վասիլի Կրյուկովի ձին վիրավորվել էր. նրան հետապնդում էին սպիտակ կազակները:

Նա դեն շպրտեց դատարկ հրացանը, արձակեց թուրը, նագանը խրեց թևատակը, և ետ դարձնելով թուլացած նժույգին, գնաց կազակներին ընդառաջ:



Կազակները զարմացան այդպիսի բանից, քանի որ այդ կռվում սովորություն չկար, որ կարմիրները ցած նետեին զենքը... Դրա համար էլ նրանք չսպանեցին Կրյուկովին ընթացքի ժամանակ, այլ շրջապատեցին և ուզեցին իմանալ, թե այդ մարդուն ի՞նչ է պետք և ինչի՞ վրա է նա հույս դնում, որ գալիս է իրենց մոտ: Կրյուկովը հանեց կարմիր աստղավոր գորշագույն փափախը և ասաց.

— Այստեղ ո՞վ է պետը, նա թող արագ վերցնի այս փափախը:

Այն ժամանակ կազակները որոշեցին, որ այդ փափախի մեջ ռազմական ծրար է կարված. նրանք կանչեցին իրենց պետին:

Բայց երբ վերջինս մոտեցավ ու պարզեց ձեռքը, Կրյուկովը թևատակից դուրս քաշեց նագանը և կրակեց ուղիղ սպայի ճակատին: Կրյուկովին կազակները ըսպանեցին ու սլացան իրենց ճանապարհով:

Նրանցից ոմանք հայհոյում էին սպային, մյուսները՝ իրենց սպային: Բայց կային այնպիսիներն էլ, որ այժմ ընթանում էին լուռ և մռայլ ու մտածում այն մասին, թե ի՞նչ ուժեղ են կարմիրները:

Գիշերը մի կարմիրբանակային բերեց ծանուցագիրը: Իսկ արշալույսին, երբ Ալկան դեռ քնած էր, հայրը պինդ համբուրեց նրան և գնաց կռիվ՝ արշավանքի:

Առավոտյան Ալկան բարկացավ, թե ինչո՞ւ իրեն չեն արթնացրել. իսկույն ևեթ հայտարարեց, որ ինքն էլ է ուզում արշավանքի գնալ: Նա հավանաբար կգոռար, լաց կլիներ: Բայց բոլորովին անսպասելի կերպով մայրը նրան թույլ տվեց:

Եվ ահա, որպեսզի ճանապարհից առաջ ուժ հավաքի, Ալկան առանց կամակորություն անելու մի լրիվ ափսե շիլա կերավ, կաթ խմեց: Իսկ հետո մոր հետ միասին, նստեցին արշավային հանդերձանք պատրաստելու: Մայրը նրա շալվարն էր կարում, իսկ նա հատակին նստած փայտից իր համար թուր էր ռանդում: Այստեղ էլ, աշխատանքի միջոցին, նրանք սովորեցին արշավային քայլերգեր, որովհետև այնպիսի երգով, ինչպես «Անտառում ծնվեց եղևնին», հեռու չես գնա: Ե՛վ մոտիվն այն չէ, և՛ խոսքերն այնպիսին չեն, և՛ այդ մեղեդին մարտի համար բոլորովին հարմար չէ:



Ահա եկավ մոր աշխատանքային հերթապահության գնալու ժամանակը. նրանք իրենց գործերը հետաձգեցին վաղվան:

Այսպես օրեցօր Ալկային պատրաստեցին հեռավոր ճանապարհի համար: Կարեցին շալվարներ, վերնաշապիկներ, դրոշներ, դրոշակներ, տաք գուլպաներ ու բրդե ձեռնոցներ: Միայն հրացանի և թմբուկի հետ միասին ութ հատ փայտե թուր էր կախված պատին: Իսկ այդ ոչինչ, քանի որ տաք կռվի մեջ թրի կյանքն ավելի կարճ է, քան հեծյալի:

Վաղուց, թերևս, կարող էր Ալկան գնալ արշավանքի, բայց շուտով վրա հասավ դաժան ձմեռը: Իսկ այդպիսի սառնամանիքի ժամանակ, իհարկե, շուտով հարբուխ կընկներ, կամ կմրսեր: Ալկան համբերատար կերպով սպասում էր տաք արևին:

Ահա և վերադարձավ արևը: Սևացավ հալչող ձյունը: Եվ այն է, ուզում էր գնալ, զանգը հնչեց: Ծանր քայլերով սենյակ մտավ ռազմից վերադարձած հայրը: Նրա դեմքը մռայլ էր, հողմահարված, շրթունքներն էլ ճաքճքել էին, բայց գորշագույն աչքերը նայում էին ուրախ:

Նա, իհարկե, գրկեց մորը: Վերջինս էլ շնորհավորեց նրան հաղթանակի առթիվ: Հետո նա պինդ համբուրեց որդուն, նայեց Ալկայի արշավային հանդերձանքին և ժպտալով հրամայեց որդուն, որ զենքը և հանդերձանքը պահի կարգին վիճակում, որովհետև առաջիկայում ևս շատ ծանր մարտեր և վտանգավոր արշավանքներ կլինեն:

## ԼՈՒՍԻՆՆ ՈՒ ՏՂԱՆ

*ՀՈՎՈՍ ԱՊԵՐ*

— Իմ սիրուն լուսին,
Մի՞թե չես մրսում,
Որ մութ գիշերին
Շրջում ես դրսում:

Ամեն տեղ ձյուն է,
Չի երգում առուն,
Քո լույսը նույնն է
Ձմեռ, թե գարուն:

— Ինձ համար չկա
Ձմեռ, թե գարուն.
Ինձ լույս է տալիս
Արևը սիրուն:

Բայց որ գիշերը
Նա դուրս չի գալիս,
Նրա փոխարեն
Ես եմ լույս տալիս:

## ԼԵՆԻՆՅԱՆ ՄՐՑԱՆԱԿՆԵՐ

1924 թվականին առաջարկ մտցվեց հիմնել Վ. Ի. Լենինի անվան մրցանակներ:

Գիտության բոլոր ճյուղերից էլ կարող էին այդ մրցանակներին ներկայացվել: Բայց դրանք պետք է լինեին նորություններ գիտության մեջ և կենսական մեծ նշանակություն ունենային կոմունիստական հասարակության կառուցման ճանապարհին:

1925 թվականի հունիսի 23-ին սովետական կառավարությունը հիմնեց այդ մրցանակները: Որոշումը մեծ ոգևորությամբ ընդունեց մեր ժողովուրդը:

Առաջին անգամ 1926 թվականին Վ. Ի. Լենինի անվան մրցանակներ ստացան սովետական հայտնի գիտնականներ՝ Վ. Վ. Օբրուչևը, Ն. Ն. Վավիլովը, Դ. Ն. Պրյանիշնիկովը և ուրիշներ: 1935 թվականից հետո Վ. Ի. Լենինի անվան մրցանակների շնորհում չկատարվեց:

Այժմ, երբ մեր երկիրը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ կառուցել է սոցիալիզմ և աստիճանաբար անցնում է կոմունիզմին, շատ կարևոր է մեր տնտեսության է՛լ ավելի ծաղկումն ու զարգացումը, նոր տեխնիկայի ներդրումը և մեր երկրում նյութական ու կուլտուրական բարիքների առատության ավելացումը: Այդ բոլորի համար խոշոր դեր ունի տեխնիկական առաջադիմությունը, գիտության և կուլտուրայի զարգացումը:

Այդ պատճառով սովետական մարդիկ մեծ հիացմունքով լսեցին Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտկոմի և Մինիստրների Սովետի որոշումը Կոմունիստական պարտիայի ու Սովետական պետության մեծ հիմնադիր Վ. Ի. Լենինի անվան մրցանակների վերականգնման մասին՝ գիտության և տեխնիկայի առավել աչքի ընկնող աշխատանքների համար: Այդ որոշմամբ հիմնվում են նաև նոր մրցանակներ գրականության և արվեստի այն նշանավոր երկերի համար, որոնք ճանաչում են ստացել ժողովրդի լայն խավերի կողմից:

Հիմնված է հիսուն Լենինյան մրցանակ: Մրցանակները պետք է շնորհվեն ամեն տարի Վ. Ի. Լենինի ծննդյան օրը:

# ՎՍՏԱՀՈՒԹՅՈՒՆ

Լ. ԲԱՌՆԱԿՅԱՆ

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

*Սմբատիկն ու Վաչագանն անհամբերությամբ սպասում էին. վերջապես ընկեր Միքայելյանը տետրերի կապոցը բաց արեց: Օրվա հերթապահներն սկսեցին բաժանել տետրերը:*

*Սմբատիկն իսկույն վերցրեց իր տետրը և ուրախացած բացագանչեց.*

*— Ջա՜ն, «5» եմ ստացել:*

*Այդ պահին Վաչագանը նայում էր իր գրավոր աշխատանքի տակ նշանակված «4»-ին ու գլուխը չէր բարձրացնում:*

*— Տեսնեմ դու ի՞նչ ես ստացել,— գլուխը երկարացրեց Սմբատիկը: Վաչագանը ծածկեց տետրը:*

*— Քո ի՞նչ գործն է...*

*«Հը՜մ, ուրեմն «5» չի ստացել» — մտածեց Սմբատիկն ու գրիչը թանաքամանի մեջ թաթախելով արտագրեց գրատախտակի վրա գրված ամիսամսաթիվը: «Լավ է եղել, պարծենում էր, թե «5» ստացած կլինի...»:*

*Ուսուցչուհին սկսեց թելադրել: Սմբատիկն ու Վաչագանը նստել էին իրարից հեռու և այդ օրը ոչ մի բառ իրար չասացին:*

*Սմբատիկն ուզում էր ցույց տալ, որ առանց որևէ բանի էլ ինքը կարող է «5» ստանալ: Վաչագանն էլ ուզում էր ապացուցել, որ ինքն էլ կարող է անսխալ գրել: Երբ վերջացրին ու տետրերը հանձնեցին, ընկերները նայեցին միմյանց: Երկուսի դեմքին էլ ինքնագոհություն կար:*

*Միքայելյանը տետրերը հավաքելուց հետո գրատախտակի մոտ կանչեց Շուշանիկին և թելադրեց մի շարք դժվար գրվող բառեր՝ այդ օրվա թելադրությունից: Յուրաքանչյուր բառը գրատախ-*



տակի վրա տեսնելիս, Սմբատիկն ու Վաչագանը բացագանչում էին.

— Այդ էլ ճիշտ է, այդ ճիշտ է... Իսկ երբ Շուշանիկը գրատախտակի վրա գրեց «փորձուցյուն» բառը, Վաչագանը շփոթվեց, կկոցած աչքերով նայեց գրատախտակին ու ձայն չհանեց։

— Հը՛, երևի սխալվել ես, հա՞,— ժպտալով հարցրեց Սմբատիկը։

Չնայած Վաչագանը հաստատ համոզված էր, որ սխալ է գրել, բայց ցույց չտվեց։

Միքայելյանը գրատախտակի մոտ կանգնած շարունակում էր բացատրել գրված բառերի ուղղագրությունը, բայց Վաչագանն այլևս չէր լսում. նրա ամբողջ ուշադրությունը իրենց սեղանին դրված տետրերի կապոցի վրա էր։ «Այսօր շատ միրուն ու մաքուր էի գրել, եթե այդ մի սխալը կատարած չլինեի, անպայման «5» կստանայի...»

Նա այլևս չէր ուզում թեքվել, նայել Սմբատիկին։

— Վաչագանը շարունակում էր նայել տետրերի կապոցին։ Նա արդեն ճանաչել էր իր տետրը, որի ծայրին մի փոքրիկ կաթիլ թանաք կար թափված։ Նա նայում էր ու մտածում՝ «Ա՛յ հիանալի բան կլիներ, հա՜... Հանկարծ ընկեր Միքայելյանը մոռանար տետրերի կապոցն ու դուրս գնար... Ինքն իսկույն դուրս կքաշեր իր տետրը և... Ոչ, ոչ, այդպես չէր լինի, ո՞վ կթողներ իրեն, որ ինքը բաց աներ կապոցը, իսկույն կխլեին ձեռքից և կտանեին ուսուցչանոց։ Լավ կլիներ, եթե հանկարծ ամբողջ դասարանը դատարկվեր, մնային ինքն ու տետրերը, այն ժամանակ արդեն հեշտ կլիներ...

Մտածում էր Վաչագանը, նայում շուրջն ու ինքն իրեն ժպտում։ Ինչո՞ւ պիտի ընկեր Միքայելյանը տետրերը մոռանա, կամ ինչո՞ւ պիտի դասարանը մի պահ դատարկվի։

Վաչագանը նայեց Սմբատիկին, նա ուրախ էր, Վաչագանն իսկույն շրջեց դեմքը, նրան թվում էր, թե հանցավորը Սմբատիկն է, որ ինքը սխալվել է։ Եվ երբեք չէր կարողանում հաշտվել այն մտքի հետ, որ հաջորդ գրավոր աշխատանքի ժամին էլ Սմբատիկն այդպես հպարտությամբ պիտի նայի իրեն, մյուսներին ցույց տա «5»-ը և իր փոխարեն պատասխանի՝ Վաչագանը «4» է ստացել...

Մինչև դասերի վերջը Սմբատիկն ու Վաչագանն այլևս ոչ մի խոսք չասացին այդ օրվա գրավոր աշխատանքի մասին։ Վաչագանը տխուր էր։

Դասերից հետո Սմբատիկն ու Վաչագանը դուրս եկան դպրոցից և նկատելով իրենց առջևից քայլող Միքայելյանին, շտապեցին հասնել նրան։ Վաչագանի սիրտը նորից սկսեց ճմլվել։ Ուսուցչուհու թևի տակ դրված էր տետրերի կապոցը։

«Փորձուցյուն, փորձուցյուն»,—մտքում կրկնում էր Վաչագանն ու իրեն թվում էր, թե ահա ուսուցչուհու թևի տակից ներքև են թափվում տետրերը, ինքը վերցնում է իր տետրը, բաց է անում «փորձուցյուն» բառի մեջ գրած ց-ն դարձնում է ձ և նորից տետրը իր տեղն է դնում...

— Ընկե՛ր Միքայելյան, ընկե՛ր Միքայելյան,— հանկարծ լսվեց քարտուղարուհու ձայնը։ Աշակերտներից մեկը վազելով մոտեցավ.

— Ընկեր Միքայելյան,— հևալով սկսեց նա,— հեռախոսով հայտնել են, որ դուք ներկայանաք ժողկրթության բաժին։

Միքայելյանը մի պահ մտածկոտ նայեց լրաբեր աշակերտին, ցանկանալով կարծես վերհիշել, թե ինչո՞ւ պիտի իրեն կանչած լինեն, ապա հարցրեց իրեն մոտեցող քարտուղարուհուն.

— Ինչո՞ւ են կանչել, Գոհարիկ։

— Ընկեր Միքայելյան, ինչ-որ խորհրդակցություն կա ժամը 2-ին, մնում է ընդամենը 10 րոպե,— ժամացույցին նայելով պատասխանեց քարտուղարուհին։



— Լա՛վ,— գլխով արեց Միքայելյանն ու շարունակեց ճանապարհը։ Բայց մի երկու քայլ անելուց հետո կանգ առավ, նայեց իր ետևից եկող աշակերտներին։

— Վաչագան,—ասաց ուսուցչուհին, ուղիղ նրա

աչքերին նայելով,— դու կարո՞ղ ես այս տետրերը մեր տունը տանել։

— Ինչո՞ւ չէ,— հուզմունքը հազիվ զսպելով պատասխանեց Վաչագանը։



Միքայելյանը տետրերի կապոցը տվեց Վաչագանին ու շտապ քայլելով առաջացավ։

Վաչագանի ձեռքերը սկսեցին դողալ, պայուսակն իսկույն թևի տակ տեղավորեց ու ամուր գրկեց տետրերի կապոցը։

Սմբատիկը նախանձեց, բայց աշխատեց ցույց չտալ։ Վաչագանն այդ զգաց և ավելի հպարտությամբ գրկեց տետրերի կապոցը։

Ընկերները լուռ էին, ոչ մեկը չէր համարձակվում խոսել։

Վաչագանը քայլում էր հաստատ ու հաղթական, մերթ ընդ մերթ նայելով թևի տակ դրված տետրերին, իսկ Սմբատիկը բոլորովին ընկերոջ կողմը չէր նայում։ Երբ նրանք հասան Սմբատիկենց շենքի անկյունը, նա սովորականի նման չթեքվեց դեպի իրենց բակը, այլ կանգ առավ ու նայեց Վաչագանին։

Վաչագանը կարծում էր, թե Սմբատիկն էլ է ուզում իր հետ գնալ Միքայելյանենց տուն։ Բայց Սմբատիկը այդպիսի բան չասաց, նա մի պահ խորհրդավոր տոնով ընկերոջը նայեց ու հարցրեց.

— Դու հիմա ուղիղ ընկեր Միքայելյանենց տո՞ւն ես գնալու։

— Իհարկե, իսկ ինչո՞ւ ես հարցնում։

— Դե, հենց այնպես, ուզում եմ իմանալ... Թե՞ ուզում ես գնալ ձեր տուն, գրքերդ դնել, հետո նոր գնալ նրանց տուն։

— Ո՛չ, ես նախ պիտի տետրերը տանեմ...

Սմբատիկը չգիտեր ինչպե՞ս սկսեր, ինչպես հայտներ իր միտքը։ Նա նայեց Վաչագանին ու ամաչեց։ Վաչագանի աչքերն ուրախությունից փայլում էին, ուսուցչուհու հանձնարարությունը նրան անչափ ուրախացրել էր, նա շտապում էր կատարել։

— Ուզում ես եկ միասին տանենք,— ասաց նա։

Սմբատիկն ուրախացած սկսեց քայլել Վաչագանի կողքից, աչքը չկտրելով տետրերից։ «Ինչո՞ւ դասարանում չասացի, որ սխալ ունեմ, այ, հիմա ամեն ինչ լավ կլիներ, հիմա ինչպես ասել, գոնե Վաչագանն էլ սխալ ունենար, այ, այն ժամանակ հեշտ կլիներ»։

Վաչագանը տետրերն ստանալուց հետո, բոլորովին մոռացավ իր սխալի մասին. Նրան թվում էր, թե թևի տակ դրված է ոչ թե տետր, այլ բյուրեղյա մի իր, որին եթե կպչեր, կարող էր փշրվել...

— Վաչագան,— մի պահ լռելուց հետո խոսեց Սմբատիկը,— լավ հիշո՞ւմ ես, դու ոչ մի սխալ չունե՞ս։

— Չգիտեմ, աչքերը թարթելով պատասխանեց Վաչագանը։

— Իսկ ես կարծում եմ մի տեղ սխալվել եմ...

— Դե ի՞նչ անենք, կարող է ես էլ սխալ ունեմ։

Վաչագանի պատասխանն ուրախացրեց Սմբատիկին, և նա շուրջը նայելով ավելացրեց.

Վաչագան, եկ այստեղ նստենք, բաց անենք մեր տետրերը, մի անգամ կարդանք...

— Ո՛չ, ո՛չ,— տետրերի կապոցն ամուր կրծքին սեղմելով, պատասխանեց Վաչագանը։

— Դե լավ, ուզում ես մեր տուն գնանք, որ ոչ ոք չնկատի։

— Ի՞նչ,— նորից աչքերն արագ-արագ թարթելով խոսեց Վաչագանը։— Եթե քեզ տված լիներ, տետրերը բաց կանեի՞ր...

Սմբատիկը մոլորված շուրջը նայեց,— նրան թվաց, թե իրենց խոսակցությունը լսում են բոլորը...

— Այո, ի՞նչ կա որ,— շշնջաց Սմբատիկը, եթե սխալներ ունենայի, կուղղեինք, ընկեր Միքայելյանը կկարծի, թե հենց դասարանում ենք ուղղել, կամ այնպես կդարձնենք, որ բոլորովին չի երևա... և երկուսս էլ «5» կստանանք...

Վաչագանը մի պահ մտածկոտ նայեց Սմբատիկին, ապա տետրերի կապոցին։

— Չէ՛, պետք չի,— ասաց նա ու քայլեց։

Սմբատիկը մնաց կանգնած։ Նա չէր հավատում լսածին, կարծես տաք ջուր լցվեց գլխին, մինչև ականջները կարմրած մնացել էր փողոցի մեջտեղում, իսկ առջևից հպարտությամբ գնում էր Վաչագանը՝ տետրերի կապոցը թևի տակ։ Երբ Վաչագանը շրջվեց, Սմբատիկն այլևս չէր երևում։

«Նեղացավ, խռովեց, գնաց,— հատ-հատ կրկնեց Վաչագանը,— մի քանի օր հետո չի խոսի, ի՞նչ անեմ, բոլորովին էլ չեմ մտածի այդ մասին»։

Բայց հայացքն հանկարծ կանգ առավ իր տետրի վրա, ու սիրտն սկսեց արագ բաբախել։

«Ո՛չ, ո՛չ, այդպիսի «5»-ը պետք չի ինձ», ինքնիրեն խոսելով գնում էր Վաչագանը։ Եվ իսկույն



հիշեց մի փոքր առաջ իրեն ուղղված ուսուցչուհու սիրալիր, ժըպտացող հայացքը, դեռ ականջում հնչում էր նրա բարակ ձայնը. «Վաչագան, դու կարո՞ղ ես այս տետրերի կապոցը մեր տուն տանել»։

Վաչագանի սիրտն սկսեց թրթռալ, նայեց տետրերի վրա կպցված թելին. ամո՞ւր է, չպոկվի՞, չթափվի՞ հանկարծ։

«Ահա, հիմա բաց կանի», պատի տակ կծկվելով շշնջաց Սմբատիկը, որն ընկերոջից բաժանվելիս ոչ թե տուն էր գնացել, այլ պատերի տակով կուզեկուզ քայլելով հետևում էր Վաչագանին։



«Ես գիտեմ, դու բաց կանես տետրը, այն ժամանակ ես քեզ հետ կխոսեմ, ամբողջ դասարանով մեկ խայտառակ կանեմ...»։

«Ըհը», վերջապես ուրախացած բացականչեց Սմբատիկն ու սկսեց վազել, բայց Վաչագանն իսկույն ամրացրեց կոշիկի քանդված կապն ու բարձրացավ կռացած տեղից։

Սմբատիկն արագ փախավ։

Դիմացից երևում էր Միքայելյանենց բընակարանը, Վաչագանը քայլում էր արագ, սրտատրոփ։ Նա կըրծքին սեղմած տանում էր, կարծես, ոչ թե տետրերը, այլ՝ ուսուցչուհու վստահությունը։

Մի փոքր անց նա թակում էր ուսուցչուհու դուռը, իսկ Սմբատիկը ծկլատում էր պատատակից ու ամոթխած թաքցնում գլուխը, որ Վաչագանը հանկարծ չնկատի իրեն։

## ԱՆՁՐԵՎ ԵՎ ԱՐԵՎ

ՎԵՍՊԵՐ

Շափո՛ւմ է, շաչո՛ւմ անձրևը դրսում,
Երգում է անուշ, արտերը ցողում,
Արտերը ցողում, սրտի հետ խոսում,
— Ջա՜ն, ինչ անուշ է անձրևը դրսում:

Խայտում է, խնդում անձրևը ճանդում,
Մաղում է մարմանդ, մարգերը ջրում,
Մարգերը ջրում, ֆնֆշալի խոսում,
— Ջա՜ն, ինչ անուշ է անձրևը դրսում:

Նազով է գալիս անձրևը սարում,
Իջնում է բել-բել, արոտը բացում,
Արոտը բացում, կարկաչով խոսում,
— Ջա՜ն, ինչ անուշ է անձրևը դրսում:

Մանուկներն արծաթ ծիծաղ են թափում,
Խաղում են աշխույժ, նոր երգ են ասում,
Նոր երգ են ասում, ցնծալի խոսում,
— Ջա՜ն, ինչ անուշ է անձրևը դրսում:

***

Շաչում է, շողում անձրևը դրսում,
Ոսկի է թափում, մեր հողը ջրում,
Մեր հողը ջրում, բայց էլ չի խոսում...
— Ջա՜ն, ինչ անուշ է անձրևը դրսում:

# ՄԱՆԿԱԿԱՆ ԵՐԿԱԹՈՒՂՈՒՄ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

Ինչ պայծառ է փայլում արփին,
Ճառագայթներով իր անշեջ,
Ինչ ուրախ է գետի ափին,
Ծառ ու ծաղկի ծովի մեջ:
Մենք հաճախ ենք գալիս այստեղ,
Հանգստանում, լողանում
Ու գնացքով՝ փոքրիկ, թեթև,
Գետափով այս սլանում:
Կայարանի մեր նոր պետր
Մեկ գնում է, մեկ գալիս,
Ստուգում է իր օբյեկտը,
Հրամաններ է տալիս:
Մի թղթակից հենց այդ պահին
Եկավ պետի մոտ, ասաց.
— Պիտի գրեմ ես ձեր մասին
«Պիոներ կանչում» մի հոդված:
Մի նկարիչ նույնպես եկել
Ականջին էր փսփսում.
—«Ավանգարդն» է ինձ ուղարկել,
Ձեր նկարն են շուտ ուզում:
— Ինձ կներեք դուք երկուսդ էլ,
Զբաղված եմ ես անչափ,
Դուք կարո՞ղ եք քիչ սպասել,
Գործեր ունեմ շատ շտապ:

Այդ միջոցին նրա եղբայր
Հայկն է գալիս ու ասում.
— Գագիկ, ինձ էլ գնացքով տար՝
Գնացք նստել եմ ուզում:
— Տոմսակներ են վաճառում, տե՛ս,
Պատուհանին մոտեցիր.
Հենց որ տոմսակ կվերցնես,
Եկ, այս դռնից ներս անցիր...
Երբ գնացքը զիլ սուլոցով
Գետի ափով սլացավ,
Կայարանի պետը սիրով
Իր հյուրերին մոտեցավ:
— Ա՛յ, հիմա ես կարող եմ ձեզ
Հանգիստ խղճով ընդունել.
Կներեք, որ գործն իմ այսպես
Պահանջում է լուրջ լինել...
Մեր Յոլակն է մեքենավար,
Իսկ Նունիկը՝ հնոցպան,
Սասունիկն է սլաքավար.
Բոլորն էլ ժիր, կարգապահ:
Նրանց մասին դուք գրեցեք
Ու նկարեք ձեր թերթում.
Իսկ իմ մասին... ինձ կներեք,
Ես դեռ նոր եմ աշխատում...





# ԳՈՂԸ

Գ. ՍԵՎՈՒՆՑ

Նկ. Գ. ԽԱՆՋՅԱՆԻ

## 1

Գյուղից դուրս, ուռենու տակ տխուր նստած էր մի աղջիկ ու լաց էր լինում։

Նրան ձայնակցում էր վճիտ, արագահոս առվակը։

Արցունքի կաթիլները գլորվում էին աղջկա ցորնագույն այտերից, ընկնում խոխոջուն առվակի մեջ, և չկար մեկը, որ հարցներ՝ ի՞նչ է եղել, ի՞նչ է պատահել։

Բայց ահա ընկուզենիների տակից դուրս եկան երկու հոգի, գնացին դեպի աղջիկը։

Դրանցից մեկը կոլտնտեսության նախագահն էր՝ քեռի Արտաշեսը, իսկ մյուսը՝ տարեց մի կին։

Մոտեցան։

Քեռի Արտաշեսը տեսավ լացող աղջկան, հարցրեց.

— Աղջի, Հռիփսիկ, ի՞նչ է պատահել։

Հռիփսիմեն ավելի հուզվեց և ամոթից երեսը շրջելով, ոչինչ չասաց։

Քեռի Արտաշեսը տեսավ, որ աղջիկը լացը չի կտրում, լուրջ հետաքրքրվեց.

— Դե՛, դե՛, ասա տեսնեմ, այ ցավ կերած, ի՞նչ է պատահել, հը՞։

Աղջիկն իրեն զսպելով, պատասխանեց.

— Իմ ճտերից գողանում են... Ինը հատ պակասում է...

— Ինը հա՞տ,— զարմացավ քեռի Արտաշեսը,— բա ինչո՞ւ մինչև հիմա ոչինչ չես ասել...

Աղջիկը չգիտեր, թե ինչ պատասխան տա դրան։ Վեց օր առաջ նա հաշվել էր ճտերը, տեսել, որ երեքը պակասում է, բայց ոչ ոքի չէր ասել։ Մեկ էլ այսօր նա համրեց և տեսավ, որ կորածների թվին վեցն էլ է ավելացել։ Ո՞վ էր տարել, ո՞վ կարող էր մտնել կոլտնտեսության թռչնանոցը, ճտերը գողանալ, դժվար էր ասել։

Քեռի Արտաշեսի հետ եկած կինը՝ Ծովինարը, ցանկացավ հանելուկը լուծել.

— Աղջի, երևի աղվեսն է տարել։ Էսօր Սողոյի Ծաղիկը վեր է կացել, տեսել ճտերից տասը փըրթած, բմբուլը գոմով մեկ ցրած... Աղվեսը դռան տակից ներս է մտել, ճտերին փրթել, թխսկանին էլ հետը տարել...

— Աղվեսը որտեղի՞ց մտներ,— առարկեց Հոփփսիկը,— դուռը փակ է եղել։

— Դե, վեր կաց, վեր կաց գնանք, տեսնենք ինչպես է եղել,— առաջարկեց քեռի Արտաշեսը։

Երեքով գնացին դեպի լեռնալանջին կառուցած մեծ գոմերը, որի մի թևում թռչնաբուծական ֆերման էր։

Դրսում, դահլիճի պես մեծ, դահլիճի պես ընդարձակ, հով սրահում հարյուրավոր ճերմակ ճտեր վազվզում էին, իրար կտցից կուտ խլում, ծվծվում...

Քեռի Արտաշեսն ուշադրությամբ դիտեց ամուր պատրաստած դռները, մետր ու կեսի վրա գտնվող պատուհանները և ուսերը թոթվելով ասաց.

— Չէ, չեմ հասկանում...

— Աղվեսն է տանում, աղվեսը,— իրենը պնդեց Ծովինարը։

— Աղվեսը, աղվեսը,— հեգնեց քեռի Արտաշեսը։— Դու էլ մի գլուխ աղվեսից ես խոսել... Աղվեսն այստեղ ո՞րտեղից մտնի. դուռը փակ, պատուհանները բարձր...

— Դե, որ աղվեսը չի տարել, առնետն է տարել... Անցյալ տարի Ալմաստի ճտերից հինգն առնետը խեղդել էր...

Նա ցանկանում էր պատմել, թե ինչպես է եղել, որ առնետն Ալմաստի ճտերը խեղդել է, քեռի Արտաշեսը չթողեց, կշտամբեց Հոփփսիկին։

— Լավ լինելու տեղ աչքերդ չորս արա, տես ով է տանում ճտերդ...

Նա գնաց դեպի գոմը, իսկ Ծովինարը մի քայլ հետ մնալով, ասաց.

— Աղջի, Հոփփսիկ, ընկեր Արտաշեսը ճիշտ է ասում, աչքերդ չորս արա, նայիր։ կամ աղվեսն է տանում, կամ առնետը, ուրիշ ո՞վ պետք է տանի...

Դեռ իր խոսքը չվերջացրած, նա վազեց կոլտնտեսության նախագահի ետևից։

Իսկ Հոփփսիկը մնաց թռչնանոցում, շրջապատված իր ժիր, չարաճճի ճտերով, բայց տխուր ու տրտում։ «Ինչ էլ լինի, ինչ էլ լինի,— մտածում էր նա,— գողին պետք է գտնել...»։

2

Երեկոները Հոփփսիկը սովորաբար շուտ էր տուն գնում։ Բայց այդ օրը նա իր ճտերին տեղավորելուց հետո թռչնանոցի դռները պինդ փակեց և առվի մոտ թաքնվեց մի քարի ետևում։

Մութն ընկավ, երկնքում աստղերը ցոլացին։

Մի ժամից ավել էր, ինչ այգիներում լռեցին փայտփորիկները։ Մեկը դրանցից, երևի ամենաանհանգիստը, հեռագրասյան վրա այնպիսի կրակահերթ տվեց, որ Հոփփսիկը նույնիսկ տեղում վեր թռավ։

— Տրա-տրա՛-տա՛-տա՛-տա՛...

Այգիներով մեկ տարածվեց փայտփորիկի ձայնը, և լռություն տիրեց։

Հետո լսվեց բվի կռինչ։ Իրիկվա հովը մեղմ խաղում էր ծառերի սաղարթների հետ, ձորը լցնում խորհրդավորությամբ։

Չնայած գյուղը հեռու չէր, այնտեղից լսվում էր շների հաչոցը և շոֆեր Վահանի ռադիոընդունիչի ձայնը, բայց և այնպես Հոփփսիկի սիրտը վախ ընկավ։ Նա երբեք այնքան ուշ, մեն-մենակ գյուղից դուրս չէր մնացել։ Եթե իր եղբայրը՝ Աշոտը, բանակում չլիներ, իր հետ կգար այստեղ։ Միասին կսպասեին նույնիսկ մինչև առավոտ. աչք չէին փակի, մինչև չիմանային, թե այդ ով է, որ գիշերը գալիս է, ճտերը գողանում։ Իսկ որ ճտերը գիշերն էին գողանում, ոչ թե ցերեկը, այդ բանում նա համոզված էր։ Առաջին երեք ճուտն անհետանալուց հետո նա ամբողջ ցերեկը գեթ մի րոպե աչքը ճտերից չէր հեռացնում։ Ի՞սկ երեկոները դուռը փակում էր գնում։ Բայց, միևնույն է, ահա նորից վեց ճուտ պակասում է։ Ուրեմն մեկը գալիս էր, մտնում թռչնանոցը և ճտերը տանում։

Բայց ո՞վ էր դա, ո՞վ։

Նստել էր Հոփփսիկն առվակի մոտ, քարի ետև, միտք էր անում, միտք և չէր կարողանում հասկանալ, թե ով էր թշնամություն անում։ Մերթ նա նայում էր մթով պատած այգիների կողմը, մերթ՝ աստղերով փայլող երկնքին, իսկ ամենից շատ նայում էր թռչնանոցին, ուր նրա կարծիքով պետք է հայտնվեր գողը։

Դժվար էր ասել, թե ինչքան էր նա սպասել, երբ հանկարծ գոմերի մոտ երևաց մի ուրվական, շարժվեց դեպի թռչնանոցը։

Հոփփսիկի սիրտն այնպես արագ խփեց, ինչպես երբեք չէր խփել։ Մինչ այդ էլ նա վախենում էր, իսկ հիմա հուզմունքից և վախից սկսեց ատամ-ատամի զարկել։ Մինչդեռ այն ուրվականը շուտով մարդու կերպարանք ստացավ, մոտեցավ թռչնանոցին, նայեց երկնքին, վերին պատերի տակերը, մնաց մոլոր կանգնած։

Հոփփսիկը ցանկացավ գոռալ. էյ, այդ ո՞վ է։

Նա նույնիսկ բաց արեց բերանը, բայց ոչ մի ձայն չլսեց։

Լեզուն կապվել էր։

Տեղից վեր կենալով, դողացող ոտքերով նա սկսեց վազել, բայց ոչ թե դեպի գողը, այլ դեպի

գյուղ։ Վազեց նա, որքան որ ուժ ուներ, թռչկոտելով քարերի և առվակների վրայով։

Սայլվոր Օհանի շունը արձակված էր. ընկավ նրա ետևից, քիչ էր մնում հասնի, կծի։ Բայց այդ պահին շուն չէ, լուսան էլ լիներ՝ էլի Հռիփսիկին չէր հասնի։

Կոլտնտեսության գրասենյակում էին քեռի Արտաշեսը, հաշվապահը և էլի երկու բրիգադիր։

Հռիփսիկն իրեն ներս գցեց գրասենյակ և, խոսք ասելու փոխարեն, սկսեց հևալ.

Հաշվապահն հասկացավ, որ աղջիկը վախեցել է, ջուր լցրեց բաժակի մեջ, տվեց նրան։

Աղջկա դեմքը սարսափ էր արտահայտում։

— Խմի՛ր, մի կում խմիր,— ասաց հաշվապահը։

Բաժակը ձեռքով ետ տալով, Հռիփսիկը, այնուամենայնիվ, կարողացավ բացագանչել։

— Գո՜ղը, գո՜ղը…

Ներկաներին կարիք չկար բացատրելու, թե ինչ գողի մասին է խոսքը։ Անհետացած ճտերի մասին նրանք գիտեին։

Քեռի Արտաշեսը տեղից վեր թռչելով, առաջ ընկավ։

— Գնանք, ցույց տուր…

Գնալիս էլ պայմանավորվեցին, թե ինչպես չորսով շրջապատեն գողին ու բռնեն։ Հռիփսիկին հաշվի չառան, կարծես նա չկար։ Մինչդեռ նա քայլում էր քեռի Արտաշեսի կողքից և այլևս չէր վախենում։

Երբ հասան այն ուռենուն, որի տակ Հռիփսիկը նստած լաց էր եղել, տեսան, որ մեկը Թռչնանոցի կողմից դեպի գյուղ է գնում։ Այդ անհայտ անձնավորությունը որոշ տեղ լուռ գնաց և հանկարծ կանգ առնելով, կանչեց.

— Հռի՜փ, Հռի՜փ, այ աղջի, Հռիփսի՜կ…

Հռիփսիկը նույնպես կանգ առավ, շփոթված նայեց իր հետ գնացողներին և պատասխանեց.

— Հը՜…

— Ջոռ ու ցավ, այ աղջիկ, բա խո՞ւլ ես, այսքան կանչում եմ, չես լսում… հողեմ գլուխդ…

— Այդ ինչո՞ւ ես կանչում, այ Ծովինար,— մի տեսակ հիասթափված հարցրեց քեռի Արտաշեսը։

— Ա՛յ տղա, բա ի՞նչ անեմ, էդ սևերեսը վեր է կացել եկել էստեղ, թե՝ ուզում եմ գողին բռնել։ Մոր աչքերն էլ չեն տեսնում, որ դա, դրան տոմ տանի։ Խեղճ կինն ինձ է խնդրել, թե՝ գնա, տես ինչ եղավ աղջիկը։ Աղջի, դու ի՞նչ գող բռնող ես։ Գողն ինչի՞ պիտի գա, քեզ մոտ կանգնի, որ դու նրան բռնես։

— Վայ, գրողը քեզ տանի Հռիփսիկ,— հևալով ասաց բրիգադիրներից մեկը։— Մենք էլ վազում ենք, որ գողին բռնենք… Բանից պարզվում է, որ քո գողը Ծովինարն է եղել։

Ուրիշներն էլ ձեռք առան Հռիփսիկին.

— Աղջի, գողը մեկն էր, թե՞ աչքիդ տասն է երևացել,— հարցրեց մյուս բրիգադիրը։

Հռիփսիկը լուռ լսում էր նրանց և ամաչում։ Հիմար բան ստացվեց. վաղը գյուղում կպատմեն, կծիծաղեն…

Այդ ամբողջ գիշեր նրա աչքերին քուն չեկավ։ Իսկ առավոտյան շուտ, երբ գնաց Թռչնանոց, նա գողին բռնեց, բայց… Ավելի լավ է պատմեմ, թե այդ ինչպես եղավ։

## 3

Վաղ առավոտյան այգիների մոտից անցնելիս նրան պատահեց պահակ Մովսես քեռին և ասաց.

— Աղջի, Հռիփսի՛կ, մայրդ քանի անգամ ասել է, որ մի բահի կոթ սարքեմ։ Առ, սարքել եմ, վերցրու տար, ես ջրաղաց եմ գնում…

Հռիփսիկը վերցրեց լավ մաքրած բահի կոթը և ուսին դնելով, գնաց Թռչնանոց։ Դուռը բաց արեց և բահի կոթը ձեռնափայտի պես ձեռքին խաղացնելով, դուրս էր անում ճտերին, որոնք գիշերը տեղավորվում էին գետնին դրված արկղների մեջ։

Արկղներին նայելով, նա երկար սրահի մի ծայրից դեպի մյուսն էր գնում, երբ նկատեց, որ արկղներից մեկի ճտերը չեն շարժվում։ Հռիփսիկը կռացավ, ձեռք տվեց ճտերին և իսկույն չկարողացավ հասկանալ, թե ինչու են նրանք սատկել։ Նա ապշած մեջքն ուղղեց, շուրջը նայեց։

Եվ հենց այդ պահին պատի տակ, իրենից ընդամենը երկու քայլի վրա, տեսավ մի մեծ օձ, որն ընկել էր հաստ պարանի կծիկի պես։ Գորշ, սևին տվող նախշերով օձը գետնի վրա մի տաշտի չափ տեղ էր զբաղեցնում։

Հռիփսիկի մարմնով սարսուռ անցավ։

Օձն աղջկան տեսնելուն պես կամաց-կամաց գլուխը բարձրացրեց և կարծես պատրաստվում էր նրա վրա հարձակվելու։

Հռիփսիկը գիտեր, մեծերից լսել էր, որ երբ օձը գլուխը բարձրացնում է, պատրաստվում է հարձակվելու։

Գուցե պետք էր իսկույն փախչել, առաջին պատահած մարդուն օգնության կանչել։ Սակայն նրան թվաց, որ եթե ինքը շարժվի, օձը կհարձակվի իր վրա, կխայթի։



Կանգնած էր աղջիկը, իսկ նրա աչքի առաջ կամաց-կամաց շարժվում էր օձի կծկված մարմինը։ Նրա գլուխը մի գորտի չափ էր, մարմինն ավելի հաստ, քան բահի կոթը, որ նա դրել էր ոտքերի մոտ, արկղի վրա։ Իսկ թե ինչքան երկար էր այն, դժվար էր ասել, որովհետև օձի մարմնի մի մասը դեռ կծկված էր։ Այդ կծիկը գնալով փոքրանում էր։ Օձը կամաց-կամաց ցցվում էր տեղում և թվում էր, թե ահա ուր որ է կհասնի առաստաղին։ Ցցվում էր և զարհուրելի հայացքը աղջկանից չէր կտրում. շարունակ նայում էր նրան։

Հոփիփիկի լեզուն նորից բռնվեց։ Նա ուզում էր կանչել.

— Օգնեցե՜ք...

Ոչ մի ձայն բերնից դուրս չեկավ։

Նա չէր էլ զգում, որ ամբողջ մարմնով դողում է։ Եվ, չնայած դրան, տեղից չէր շարժվում, հիպնոսացածի պես մնում էր կանգնած և մտածում էր օձից փրկվելու մասին։ Պաշտպանվելու համար հարկավոր էր թեկուզ վերցնել բահի կոթը, որն ընկած էր նրա ոտքերի մոտ։ Երկու անգամ նա նույնիսկ փորձ արեց ձեռքը շարժել, բայց նրան թվաց, թե օձը դրանից լարվում է՝ իր վրա հարձակվելու համար։ Ոտքի մոտ ընկած փայտը վերցնելու համար Հոփիփիկը դիմեց խորամանկության։ Նա ձեռքը չշարժեց, այլ աննկատելիորեն սկսեց պպզել գետնին։

Այժմ օձը երկարում էր, իսկ նա՝ կարճանում։ Ահա նա այնքան պպզեց, որ մատների ծայրերը կպան բահի կոթին։ Դողացող ձեռքով բահի կոթը վերցնելով, նա ճիշտ և ճիշտ օձի պես կամաց-կամաց կանգնեց տեղում և, երբ զգաց, որ ամուր կանգնած է, հանկարծ վեր բարձրացրեց ձեռքի փայտը և ամբողջ ուժով զարկեց օձին։

Հոփիփիկի աչքի առաջ ընկած հաստ պարանի նման կծիկը խլրտաց, շարժվեց... Թվաց, թե այն պետք է գա, փաթաթվի իրեն, խեղդի։

Օձին մոտ չթողնելու համար Հոփիփիկը ձեռքի փայտի ծայրը դեմ տվեց նրա մարմնին, ամբողջ ուժով պահեց։

Աղջկա և օձի միջև սկսվեց մի լուռ մենամարտ։

Օձի մարմնի այն տեղը, որ Հոփիփիկն առել էր փայտի տակ, ուռել էր, կոշկի ներբանի չափ լայնացել։ Չնայած դրան, օձը գալարվում էր, ճիգեր գործ դնում փայտի տակից ազատվելու համար։

Հոփիփիկին թվաց, որ եթե ինքը օձին բաց թողնի՝ իր վերջն է։ Դրա համար էլ նա ամբողջ ուժով հենվում էր փայտին և չէր համարձակվում վերցնել այն, նորից հարվածել։ Դրա հետ միասին նա չէր կարողանում օգնության կանչել։

Եվ այդպես շարունակվում էր լուռ մենամարտը՝ աղջկա և օձի միջև։

Դժվար էր ասել, թե ինչով այն կվերջանար, եթե հանկարծ թռչնանոցի դռների մեջ չերևար Ծովինարը, որը մինչև գոմ գնալը ուզում էր Հոփիփիկին նորից մի լավ կշտամբել՝ երեկվա դեպքի համար։

— Աղջի, ի՞նչ ես մտել այդտեղ, դուրս չես գալիս...

Խոսելով նա առաջացավ դեպի Հոփիփիկը և հանկարծ սարսափահար դուրս փախավ ճչալով.

— Օգնեցե՜ք, օգնեցե՜ք... Վա՜յ, օգնեցեք...

Գոմի մոտ երկու երիտասարդ տղա եզները լծում էին սայլին։ Թողնելով իրենց գործը, նրանք վազելով եկան թռչնանոց։

— Պինդ պահիր, Հոփիփիկ, պինդ պահիր,

Հիմա ես դրա հախիցը կգամ,— ասաց երիտասարդներից մեկը և վազելով գնաց, գոմից մի բահ բերեց, օձի գլուխն առավ բահի տակ։

Փայտը ձեռքից բաց թողնելուց հետո Հոփսիկն ասես ծեծված էր, տանջված։ Նրա դեմքին գույն չկար։

Ծովինարը աղջկան տարավ առվի մոտ, երեսին ջուր ցողեց, նստեցրեց ուռենու տակ։

Տղաները սպանված օձին էլ քարշ տվին այդտեղ։ Մեկը նրանցից շոշափեց օձի փորը և ասաց.

— Այս ի՞նչ է կերել, որ փորն այսպես ուռած է…

Երկու ձեռքով օձի փորը սեղմելով, տղան նրա բերնից հանեց մի ճուտ։

— Վա՜յ, քոռանամ ես,— բացագանչեց Ծովինարը,— աղջի, ա՛յ, ճտերի գողը…

Իսկ Հոփսիկը լաց եղավ։ Նորից ուռենու տակ, առվակի ափին լալիս էր աղջիկը, բայց այս անգամ ուրախ էր, որ ինքը բռնել է գողին, մենամարտում հաղթել օձին։

## ՓՈՔՐԻԿ ՇԻՆԱՐԱՐՆԵՐԸ

Ն. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Նստած մանրիկ ավազին՝
Քար է տաշում Նշանը,
Ջուր են կրում միասին
Անահիտն ու Շուշանը,
Տուն են շինում, բայց ի՛նչ տուն,



Կնախանձեն շատերը,
Ունի չորս ոտք լայնություն,
Եվ ինչ բարձր են պատերը։
Ունի երկու պատուհան,
Ապակի է հարկավոր,
Դրա համար Սուսաննան
Վազում է ձեր պապի մոտ։
Գալիս է պապն ու ասում.
— Ես կբերեմ ապակի,
Բայց թե ձեր տան մի մասում,
Մի տեղ արեք պապիկին։
Զարմանում են ջուր կրող
Անահիտն ու Շուշանը,
— Մեծ ես, պապիկ, չես կարող
Տեղավորվել մեր տանը։

## ԿԱՆԱՉԱՊԱՏԵՆՔ ՄԵՐ ՀԱՅՐԵՆԻՔԸ

Մեր հայրենիքը պետք է լինի ոչ միայն աշխարհում ամենահզոր և հարուստ երկիրը, այլև ամենագեղեցիկը:

ՀամԼԿԵՄ Կենտրոնական Կոմիտեն արշավի է կանչում մեր պատանիներին ու երիտասարդներին: Յուրաքանչյուր քաղաքում, բնակավայրում պետք է ստեղծվեն կոմերիտական պարկեր ու այգիներ, կանաչով զգեստավորվեն փողոցներն ու հրապարակները, կարգի բերվեն ու գեղեցկացվեն ծառուղիները, դպրոցների ու պարտեզները: Յուրաքանչյուր բակ պետք է դառնա հարմարավետ, մաքուր, զարդարվի ծաղկեփնջերով, պետք է ստեղծվեն սպորտային հրապարակներ, հրապարակներում ու դպրոցներում բազմացվեն աղավնիներ, ջրավազաններում՝ կարապներ ու բադեր, պարկերում՝ սկյուռներ:

Պիոներների ու դպրոցականների սրբազան պարտքն է՝ բարեկարգել քաղաքացիական և հայրենական պատերազմների հերոսների գերեզմանները, շուրջը ծաղիկներ տնկել ու կանաչազարդել:

ՀամԼԿԵՄ Կենտրոնական Կոմիտեի դիմումին գործնական աշխատանքներով են պատասխանում մեր ռեսպուբլիկայի պիոներները:

Երևանի Միկոյանի շրջանի № 59 դպրոցի Պավլիկ Մորոզովի անվան ջոկատի պիոներները վերցրել են դպրոցի մոտի փողոցի ծառերի խնամքի շեֆությունը: Կիրովյան շրջանի № 28 դպրոցի Իլյիչի անվան ջոկատի պիոներները վերցրել են 26 կոմունարների անվան կուլտուրայի և հանգստի պարկում գտնվող Մայիսյան ապստամբության հերոսների գերեզմանոցի ծաղկապատման և կանաչապատման շեֆությունը: Միկոյանի և Շահումյանի շրջանների պիոներները վերցրել են Կիևյան փողոցի շարունակությունը կազմող և երկու շրջանները միացնող նորակառույց փողոցի կանաչապատման շեֆությունը:

Թող յուրաքանչյուր պիոներ և դպրոցական աճեցնի 1—2 ծաղիկ, տնկի ու խնամի 2—3 ծառ:

## ՄԵՆՔ ԱՌԱՆՑ ԿՈԼՅԱՅԻ

Ա. ԽՄԵԼԻԿ Նկ. Ռ. ՀՈՎԻՎՅԱՆԻ

*Ջոկատի խորհրդի նախագահ Կոլյա Վոլկովի կոկորդը ցավել սկսեց: Երբ Կոլյան այդ մասին ասաց, մենք անհանգստացանք: Իսկ հետևյալ օրը նա դպրոց չեկավ, և մենք կարգին իրար անցանք: Ճիշտ է, Վալկա Տրախովը, որը Կոլյայի հետ միևնույն շենքումն է ապրում, ասաց, որ Կոլյայի առողջությանը վտանգ չի սպառնում, բայց մենք էլի չդադարեցինք անհանգստանալ: Բանն այն է, որ ուրբաթ օրը պետք է հավաքույթ ունենայինք, և նախագահի հիվանդությունը շատ վատ ժամանակ էր սկսվել...*

*Երբ Վալկայի հետ գնացինք Կոլյային այցելության, տեսանք, որ նա պառկած է՝ կոկորդը կապած:*

*— Մաշեց ինձ աշխատանքը, տղերք,— ասաց նա խռպոտ ձայնով:— Եվ հենց հավաքույթից առա՞ջ պիտի հիվանդանայի: Հիմա դուք առանց ինձ ինչպե՞ս պիտի անեք:*

*Ես չէի իմանում, թե մենք ինչպես պիտի հավաքույթն անց կացնեինք առանց Կոլյայի, բայց որպեսզի հիվանդը չհուզվի՝ պատասխանեցի.*

*— Դու մի անհանգստանա, խնդրում եմ, էն էլ ոնց հավաքույթ կունենանք:*

*— Իհա՛րկե,— իմ ասածին հավանություն տվեց Տրախովը:— Բան ասացիր, ինչ մեծ բան է հավաքույթ անցկացնելը: Ինչ է, էլ հավաքույթ չե՞նք տեսել:*

*Վալկան շատ վստահ էր խոսում, և ինձ էլ թվաց, որ ամեն ինչ գլուխ կբերենք:*

*Բայց հենց մյուս օրը համոզվեցի, որ առանց Կոլյայի մեր ջոկատում ասես ամեն ինչ խառնվել է իրար: Սկսվեց նրանից, որ ջոկատի երգեցիկ խմբի փորձը խափանվեց: Վալկա Տրախովը մոռացել էր երգիչներին նախազգուշացնել, և ոչ ոք փորձի չեկավ: Կոլյան լիներ, անպայման կնախազգուշացներ: Բայց նա չկար:*

*Մեր պատի թերթի խմբագիր Վասյա Նովիկովը ամբողջ օրը օձիքս բաց չէր թողնում.*

*— Ո՞վ պիտի ձևավորի հավաքույթին նվիրված հատուկ համարը: Չէ՞ որ Կոլյան հիվանդացել է:*



Ես վերջ ի վերջո բարկացա ու գոռացի.

— Դու էլ ի՞նչ ես գլուխս տանում քո թերթով։ Խմբագիր ես, ինքդ էլ ձևավորիր։

— Բայց չէ՞ որ ես նկարել չեմ կարողանում,— ասաց Վասյան։

— Իսկ ես, քո կարծիքով, կարողանո՞ւմ եմ։

Թեև իմ մասին ասում են, որ ես վատ չեմ նկարում, բայց երբեք մտքովս էլ չի անցել ջոկատի պատի թերթը ձևավորել։ Սովորաբար այդ անում էր մեր նախագահ Կոլյան։

Որքան հավաքույթի օրը մոտենում էր, այնքան ավելի էր ուժեղանում իրարանցումը ջոկատում։

Առաջ, երբ Կոլյան առողջ էր, բոլորն էլ ամեն մի դատարկ բանի համար նրան էին դիմում։ Իսկ հիմա ոչ ոք չգիտեր, թե ինչ պետք է անել։

Վերջապես հասավ ուրբաթը՝ հավաքույթի օրը։ Մենք պետք է քարտեզով շուրջերկրյա ճանապարհորդություն կատարեինք։ Առավոտյան պատին երևաց մեր թերթը։ Ամոթ էլ էր նրան նայելը։ Հենց ուղիղ մեջտեղը վարունգի ձևի մի ինչ-որ շերտավոր բիծ կար։ Վասյա Նովիկովը եռանդով բոլորին բացատրում էր, թե դա երկրագունդն է։ Հոդվածները ծուռումուռ էին փակցրած, և նրանց տակից սոսնձի երկար, կեղտոտ շերտեր էին ձգվել։

Դասերից հետո հավաքույթն սկսվեց։ Բայց մարդ սիրտ էլ չունի պատմելու, թե դա ինչ հավաքույթ էր։

Վալկան գնաց կիսագնդերի քարտեզը բերելու և դատարկաձեռն վերադարձավ։

— Բոլոր քարտեզները պահարանում փակված են, իսկ Կլավդիա Պետրովնան գնացել է։

— Այ քեզ բան,— հառաչելով ասաց մեկը։— Իսկ ինչո՞ւ նրան հավաքույթի չեք հրավիրել։

— Բա առանց քարտեզի ինչպե՞ս պիտի ճանապարհորդենք,— աղմկեցին բոլորը։

— Ոչինչ, տղերք, ճամփեն չենք կորցնի,— ասաց Վալկան և ձևացրեց, թե ինքն ուրախ է։

Նա բաց արեց հավաքույթի ծրագիրը, որ Կոլյան էր կազմել, և սկսեց.

— Մոսկվայից մինչև Փարիզ մեզ տանում է առաջին օդակը։ Ձեզանից ո՞վ է պատրաստվել։

Վովա Կլիմովը մոտեցավ սեղանին։ Մենք պատրաստվեցինք լսելու։ Վովկան պատմում էր ինչպես դասի ժամանակ, երբ տված դասը վատ էր սովորած լինում։ Նա մի կերպ հասավ մինչև Լեհաստան և... կանգ առավ։ Մի երկու րոպե Վովկան ոտքերը վեր ու վար էր անում ու կրկնում.

— Լեհաստանից մեր ճանապարհը տանում է... մեր ճանապարհը...

Թե ուր է տանում մեր ճանապարհը՝ նա ասել չկարողացավ։ Վերջ ի վերջո սրտնեղած ձեռքը թափ տվեց ու ասաց.

— Ինչ որ է, Լեհաստանում բոլորն էլ լեհական ժողովրդական երգեր են երգում։— Եվ խմբին գլխով նշան արեց։ Խումբը ամբողջ ուժով սկսեց չեխական «Հովիվ» երգը։ Վովկան վրդովմունքից վեր-վեր թռավ ու գոռաց.

— Այդ ի՞նչ եք երգում դուք։ Խելք պետք է ունենալ։ Գլուխներդ կորցրե՞լ եք։



Այդ ժամանակ խումբը երգը դադարեցրեց ու հարձակվեց Վովկայի վրա: Տղաները գոռգոռում էին, թե ոչ ոք մեղավոր չէ, եթե նա ինքը վատ է պատրաստվել և ոչինչ չի հիշում:

Մի խոսքով, այնպիսի աղմուկ-աղաղակ բարձրացավ, որ ճանապարհորդելն անհնարին դարձավ: Լեհաստանից մենք ուղղակի ուղևորվեցինք դեպի մեր տները:

Ես քայլում էի փողոցով ու մտածում.

— Ա՛յ թե ինչ իրարանցում կարող է ընկնել մեկ մարդու հիվանդության պատճառով...

Բայց որքան ավելի էի մտածում, այնքան ավելի ինձ թվում էր, որ այս ամբողջ տեղի ունեցածի պատճառը ամենևին էլ Կոլյայի հիվանդությունը չի: Մեր հավաքույթը տապալվեց բոլորովին ուրիշ պատճառով:

Թարգմ. Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



## ՀԱՎ՛Ն ՈՒ ՈՉԽԱՐԸ

(Բուլղարական ժողովրդական հեքիաթ)



Հավը ձու ածեց և սկսեց բարձր-բարձր կչկչալ:

— Բոլորդ շուտ եկեք այստեղ: Տեսե՛ք, ինչ գեղեցիկ, ինչ սպիտակ ձու եմ ածել:

Քիչ հեռու իր գառնուկի հետ պառկած էր մի ոչխար: Հավը հպարտ-հպարտ անցավ նրա կողքով և ասաց.

— Ինչո՞ւ դու չես մոտենում և չես նայում, թե ինչպիսի գեղեցիկ և սպիտակ ձու եմ ածել: Դե, դու այդպիսի բան չես էլ կարող բերել:

Ոչխարը համեստորեն պատասխանեց.

— Ինչ արած, քույրի՛կ, յուրաքանչյուրը մեր տիրոջը տալիս է այն, ինչ կարող է: Դու նրան ձու ես տվել, իսկ ես՝ գառնուկ:

— Հըմ, բայց գիտես, թե ի՞նչ արժե իմ ձուն և ինչ արժե քո գառնուկը,— փքված ասաց հավը:

— Ահա գալիս է մեր տերը, հարցնենք նրան:

Տերը իմացավ, թե ինչի համար էին վիճում և ասաց հավին.

— Քո մի ձվով ես ոչինչ անել չեմ կարող: Երբ հավաքվի տաս հատ, նոր կծախեմ: Իսկ մի գառնուկի համար ինձ կտան երկու հարյուր ձու: Այժմ ինքդ դատիր, եթե դու ձվի համար ես այդպիսի աղմուկ բարձրացրել, հապա գառնուկի համար ի՞նչ պիտի անի ոչխարը:



# ՈՎ ԱՇԽԱՏԻ, ՆԱ ՈՒՏԻ

(Ժողովրդական)

*Մ. ԽԵՐԱՆՅԱՆ*

*Նկ. Ա. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*

1

Հավ-մարիկը իր փոքրիկ
Ճուտերի հետ խատուտիկ
Մի օր քուջուջ անելիս
Գտավ գարու մի հատիկ։
Ու ձայն տվեց Հավ-մարիկը.
— Ո՞վ կցանի այս հատիկը։
— Ես չեմ ցանի,— Բադիկն ասավ.
— Ես չեմ ցանի,—Սագիկն ասավ.
— Ես կցանեմ այս հատիկը,—
Ասավ նրանց Հավ-մարիկը,
Հողը փորեց,
Սերմը նորեց։

2

Օրեր անցան, սերմը բուսավ,
Ու ջրելու օրը հասավ։
— Ո՞վ կջրի,— Հավիկն ասավ։
— Ես չեմ ջրի,— Բադիկն ասավ.
— Ես չեմ ջրի,— Սագիկն ասավ.
— Ես կջրեմ,— ասավ ինքը՝
Աշխատասեր Հավ-մարիկը։
Ասավ, փոքրիկ ցնցուղն առավ,
Ջրեց գարու ծիլը ծարավ։
Ծիլը ջրվեց,
Զվարթացավ,
Ցողուն տվեց
Ու բարձրացավ,—
Վրան մի հասկ
Երկար ու ձիգ,
Շորերով խաս,
Բազմահատիկ։

3

Ամառն եկավ, հասկը հասավ։
Հավ-մարիկը տեսավ, ասավ.
— Ո՞վ կհնձի հասկը հասած։
— Ես չեմ հնձի,— Բադիկն ասավ,
Հեռու փախավ։
— Ես չեմ հնձի,— Սագիկն ասավ,
Հեռու փախավ։
— Ես կհնձեմ,— ասավ ինքը՝
Մեր ջանասեր Հավ-մարիկը։
Մանգաղն առավ,
Հասկը հնձեց
Ու կալ արավ,
Հունձքը կալսեց.
Բերքը մի բուռ
Գարի սրսուռ։

4

Երբ ուտելու ժամը հասավ՝
— Ո՞վ է ուզում ուտել,— ասավ։
— Օ՜, ես կուտեմ,— Բադիկն ասավ,
Վրա հասավ։
— Ո՜չ, ես կուտեմ,— Սագիկն ասավ,
Վրա հասավ։
— Հեռո՛ւ կացեք, քաշվեք մեկդի,
Ով աշխատի,
Նա էլ կուտի։—
Ասավ Հավիկն աշխատավոր,
Ճուտերն առավ իր շուրջ-բոլոր.
— Կուտ-կուտ-կուտ-կուտ...
Ճուտն ու մարին
Գարու բերքը
Անուշ արին։

# ԱՌԱՋԻՆ ԱՐԵԳԱԿՆԱՅԻՆ ԷԼԵԿՏՐԱԿԱՅԱՆԸ

*Պ. ՄԱԿՐՈՒՇԵՆԿՈ*

Մանկության օրերին ո՞վ չի փորձել արևի ճառագայթը բռնել կամ ցանկացած ուղղությունը տալ նրան։ Բավական էր հայելու մի կտոր բռնել արևի դիմաց, որպեսզի ճառագայթը ենթարկվեր քո կամքին. այդ ճառագայթը կարելի էր ուղղել դեպի հարևանի տան պատը կամ քեզանից մի քանի քայլ հեռու գտնվող ընկերոջ աչքերին, նրան ստիպելով աչքերը պայծառ լույսից կկոցել։

Անդրադարձնող հայելու օգտագործման այս հասարակ եղանակն էլ այժմ կազմում է աշխարհի առաջին արեգակնային էլեկտրակայանի հիմքը, մի կայան, որը կառուցվելու է Հայաստանում։

Նայեցեք այստեղ մեր տպագրած սխեմային։ Այդ էլեկտրակայանն արտասովոր է իր արտաքին տեսքով, չունի բարձր ծխնելույզներ, ինչպես որ ունեն ջերմակայանները, չունի ամբարտակ, որն անպայման պետք է ունենա ամեն մի հիդրոէլեկտրակայան։

Մոտ մեկ կիլոմետր տրամագիծ ունեցող հսկայական ու հավասար շրջագծով ծառեր են տնկված, որպեսզի հայելիները պաշտպանեն փոշուց։ Շրջանի կենտրոնում կա 40 մետր բարձրություն ունեցող մի աշտարակ։ Այդ աշտարակի վրա պետք է պտտվի շոգեկաթսան, որի պարունակած ջուրն արևի տակ կտաքանա մինչև եռալու աստիճան, և գոլորշու ճնշումը կհասնի 30 մթնոլորտի։ Գոլորշին այդտեղից խողովակներով կհոսի դեպի էլեկտրակայանի տուրբինը, որն ունի 1.200 կիլովատ կարողություն։

Աշտարակի շուրջը պետք է կառուցվի ռելսուղիների 23 շրջանակ։ 23 ավտոմատ գնացքներ հատուկ լաֆետ-վագոնիկներով այդ ռելսերի վրա կպտտեցնեն 1.293 մեծ հայելիներ։ Ավտոմատ ռելսերն այդ հայելիների երեսը միշտ ուղղված կպահեն դեպի արևը՝ հայելիների բռնած ճառագայթներն ուղղելով դեպի շոգեկաթսայի տափակ պատը։ Այդ նույն ժամանակ ուրիշ ավտոմատներ, որոնք սինխրոնիկ կերպով միացած են գնացքների սայլակների հետ, կաթսայի պատին այնպիսի դիրք կտան, որ նրա վրա անընդհատ ընկնեն հայելիներից արտացոլված միայն ուղիղ ճառագայթներ։

Այդ ձևով էլ գործելու է էլեկտրակայանը։ Երբ արևը ծագի, նրա ճառագայթները կընկնեն ֆոտոէլեմենտների վրա, որոնք գործի կդնեն ավտոմատները, իսկ վերջիններս գնացքներին կստիպեն շարունակ հայելիները դարձնել դեպի արևը և կաթսային կստիպեն իր տափակ պատը միշտ դարձնել այդ ճառագայթների կողմը։

Արդյունաբերական տիպ ունեցող առաջին արեգակնային էլեկտրակայանը նախատեսվում է կառուցել Հայաստանում, էջմիածնի և Հոկտեմբերյանի շրջանների միջև, Այղրլճի մոտ, Արարատյան դաշտավայրում։ Պատահական չէ, որ այդ նպատակով ընտրված է Արարատյան դաշտը։ Գիտնականների տվյալներով այստեղ արձանագրված է տարեկան 2.600 արեգակնային ժամ, որն զգալիորեն ավելի է Տաշքենդում կամ Աշխաբադում եղած արեգակնային ժամերից։ Բացի դրանից, երկրի մակերեսի վրա ընկած արեգակնային ջերմության տեսակետից ևս Արարատյան դաշտավայրը բռնում է առաջին տեղը։ Այստեղ երկրագնդի մակերեսի յուրաքանչյուր քառակուսի մետրը արևից տարեկան ստանում է 2 միլիոն կիլոկալորիա ջերմություն, մինչդեռ Տաշքենդի շրջանն ստանում է 1.760 հազար կիլոկալորիա, իսկ Խիրսայի (Վրաստան) շրջանը՝ 1.560 հազար կիլոկալորիա ջերմություն։

Արեգակնային էլեկտրակայանի



*ՆԿԱՐՈՒՄ.— Արեգակնային առաջին էլեկտրակայանի նախագծի սխեման։*

կառուցման համար Արարատյան դաշտավայրն ընտրված է, նաև մեկ ուրիշ պատճառով: Առաջին արեգակնային էլեկտրակայանը լինելու է ոչ թե փորձնական, այլ արդյունաբերական: Արարատյան դաշտավայրը մեծ քանակությամբ էներգիայի կարիք ունի՝ հողի աղակալման դեմ պայքարելու, դաշտերը ոռոգելու համար: Արևի էներգիայով գործի դրված պոմպերը դուրս կքաշեն ստորերկրյա ջրերը և կտան այդ դաշտերին: Այդպիսով, կայանի շնորհիվ արգասաբեր կդառնա տասնյակ հազարավոր հեկտար հող:

Արեգակնային էլեկտրակայանը բնականաբար կկարողանա գործել միայն ցերեկը, պարզ եղանակին: Տվյալ դեպքում այդ հանգամանքը մեծ անհարմարություններ չի ստեղծի, որովհետև պոմպերը գետնի տակի ջրերը դուրս կքաշեն ցերեկը: Այնուհետև «բանեցված» գոլորշին կարելի է գործադրել սառույց արտադրելու համար, որը հարկավոր է սովխոզներին: Իսկ ինչպե՞ս պետք է տաքացվեն ջերմոցները, սովխոզների աշխատողների բնակարանները ձմեռվա ամիսներին, ինչպե՞ս պետք է տաք ջուր մատակարարվի բաղնիքին, լվացքատանը: Այս պրոբլեմը ևս լուծված է շատ հետաքրքիր ձևով: Արեգակնային էլեկտրակայանին կից պատրաստվելու են ջերմության խիստ հաստարակ ակումուլյատորներ: Դրանք ստորերկրյա ջրամբարներ են, որոնք կարծես յուրատեսակ հսկայական թերմոսներ լինեն: Դրանց մեջ էլ պահվելու է այն ջուրը, որ արևի ճառագայթներով տաքացված կլինի 70—80 աստիճան: Կայանն իր ջրի ու ջերմության ծախսած պաշարը կլրացնի արև օրերին աշխատելով:

Արեգակնային էլեկտրակայանի շինարարության հետ կապված հիմնական սխեմաները ու հաշվարկումները կատարել է ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի Կրժիժանովսկու անվան էներգետիկական ինստիտուտը և տվել մեր հարավային ռեսպուբլիկաներին: Արեգակնային էլեկտրակայանի կառուցման առաջարկին սիրով արձագանքեցին Հայկական ՍՍՌ կառավարությունը և Գիտությունների ակադեմիան: Ռեսպուբլիկական նախագծային ինստիտուտներից մեկը ներկայումս կառուցողների համար պատրաստում է անհրաժեշտ փաստաթղթերը, իսկ Հայաստանի գործարաններից մեկի մասնագետներն զբաղված են բարդ ավտոմատ սարքերի պատրաստումով ու գործարկումով:

Այս տարվա հունիս ամսին պրոֆեսոր Վ. Բաումը էներգետիկայի հարցերին նվիրված համաշխարհային կոնֆերանսի մասնակիցներին (Վիեննայում) զեկուցում տվեց աշխարհի առաջին արեգակնային էլեկտրակայանի շինարարության նախագծի մասին: Նրա այդ զեկուցումը մեծ հետաքրքրություն առաջ բերեց արտասահմանյան մամուլում:

Դա անշուշտ բնական է: Արեգակնային էներգիայի օգտագործման պրոբլեմը վաղուց արդեն հետաքրքրում է շատ երկրների գիտնականներին: Ամերիկայի Միացյալ Նահանգներում գիտնականներն ամեն տարի կոնֆերանս են գումարում, որտեղ քննարկում են արեգակնային էներգիայի օգտագործման նոր նախագծեր: Այդ ուղղությամբ մեծ աշխատանք են կատարում նաև Հնդկաստանի գիտնականները: Հնդկաստանում արդեն վաճառքի են հանված զանազան տեսակի արեգակնային խոհանոցներ, որոնք իրենց կարողությամբ հավասար են 350 վատտ կարողություն ունեցող էլեկտրական վառարանի: Իտալիայում արտադրված են արեգակնային պոմպեր: Ֆրանսիացիները փորձեր են կատարում արեգակնային էներգիան օգտագործելու հրակայուն նյութերի պատրաստման համար: Որոշ աշխատանքներ են կատարվում նմանապես Անգլիայում, Ճապոնիայում և շատ այլ երկրներում:

Հայաստանում կառուցվող արեգակնային էլեկտրակայանը սովետական գիտնականների կողմից մի արժեքավոր ավանդ կլինի համաշխարհային գիտության մեջ: Այդ ավանդի արժեքն այն է, որ արևը առաջին անգամ մարդուն էլեկտրական հոսանք կտա արտադրական նպատակներով: Մոտիկ ապագայում, երբ մենք հնարավորություն կունենանք յադերն օգտագործելու կիսահաղորդիչները, այդ ժամանակ արեգակնային էլեկտրակայանները կկարողանան այդ էներգիան մեծ չափով ստանալ առանց շոգետուրբինների՝ արևի էներգիան ուղղակի վերափոխելով էլեկտրական էներգիայի:





# ԹԱՎԱՆ

Գ. ՑԻԼՈՅԱՆ

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

— Վերջացավ, կորա,— բացագանչեց Թավան, երբ նրան վերցրին շպրտեցին ցախատան անկյուններից մեկը, ուր ընկած էին ծակծկված թիթեղյա վառարանը, տակն ընկած դույլը և հին ժանգոտած մահճակալը։

— Ախր իրենք էին մեղավոր,— տրտնջում էր նա,— դրել էին ինձ թեժ կրակի վրա և մոռացել, յուղ չէին լցրել։ Ես մի կերպ դիմացա, դիմացա և վերջապես պայթեցի. իսկ հիմա այլևս բանի պետք չեմ և իզուր կորչում եմ այստեղ։ Բայց կար ժամանակ, որ իմ մեջ համեղ ձվածեղ էին պատրաստում, կարտոֆիլները կարմրում վարդագույն էին դառնում, ուռում ու փքվում էին կարկանդակները և այնքան ախորժելի էին այդ բոլորն ու համեղ...,— այսպես ասաց Թավան և լաց եղավ։

— Մի լար, Թավիկ ջան,— ծվծվաց ինչ-որ մեկը սենյակի անկյունում,— դու դեռ պետք կգաս, մի՛ մտածի,— դա մի փոքրիկ ծալովի դանակ էր,— ա՛յ, ես քեզ օրինակ, դեռ բոլորովին սարքին եմ, ինձ պատահաբար վար գցեցին և մոռացան բարձրացնել։ Եթե ինձ մաքրեն և քիչ էլ սրեն, ես բոլորովին նոր դանակ կլինեմ։

— Իսկ ես, սիրելի դանակ, ինչպես կարող եմ նորից պետքական լինել, քանի որ կողքս բոլորովին պատռվել է,— նկատեց Թավան։

— Իհարկե, որպես Թավա դու այլևս պետք չես գա, բայց դու կարող ես դառնալ շատ կարևոր մի մեքենա, օրինակ՝ գեներատոր, էլեկտրաշարժիչ, կամ մի այլ բան, և ոչ միայն դու, այլև այս մահճակալը, վառարանը և նույնիսկ տակն ընկած այս դույլը։

— Դու չե՞ս կատակում, սիրելի դանակ,— հարցրին բոլորը միասին։

— Իհարկե, ոչ,— պատասխանեց ծալովի դանակը,— ես իմ կյանքի ընթացքում շատ գործարաններում եմ եղել և շատ բան եմ տեսել՝ այնպես, որ խնդրում եմ հավատաք ինձ։

— Ա՛յ, օրինակ ես,— հարցրեց Թավան,— ես ինչպե՞ս կարող եմ հանկարծ գեներատոր դառնալ։

— Ինչո՞ւ հանկարծ,— ասաց դանակը,— որպեսզի գեներատոր դառնաս, երկար ճանապարհ պետք է անցնես։ Նախ և առաջ հարկավոր է, որ դպրոցական երեխաները քեզ գտնեն։ Հետո կհանձնեն պահեստ, իսկ այնտեղից դու անպայման գործարան կընկնես։ Այնտեղ քեզ կտանեն ձուլարանի ցեխը և կնետեն վառարանը։ Դու կձուլվես, հեղուկ կդառնաս, ճիշտ այնպես, ինչպես քո մեջ հալչում էր յուղը։ Հետո քեզ կլցնեն կաղապարի մեջ և այնքան կպահեն, մինչև սառչես ու կարծրանաս։ Հենց որ կարծրացար, քեզ կազատեն կաղապարից և դու արդեն քո հատուկ ձևը կունենաս և գեներատորի մի մասը կլինես։ Բայց դու դեռ տգեղ և մի տեսակ փշոտ կլինես։ Քեզ կուղարկեն մեխանիկական ցեխը հղկելու և գեղեցկացնելու համար և դու այնտեղից դուրս կգաս հայելու պես ողորկ ու փայլուն։ Եվ երբ քո վրա անցքեր կփորեն պտուտակների համար, էլի դու դեռ գեներատոր չես լինի, կլինես միայն նրա մի մասը։

*Միայն այն ժամանակ, երբ քեզ կմիացնեն ուրիշ մասերի հետ, որոնք կարող են լինել այստեղ ընկած մաճկալներից ու դույլերից, այն ժամանակ դուք բոլորով միասին կդառնաք մի գեներատոր։*

*— Ախ, որքան լավ կլինի,— ասաց մաճկալը,— երբ ես մաճկալ էի, մեծ հաճույքով էի տանում ամեն տեսակի ծանրություններ, որովհետև զգում էի, որ պետքական եմ։*

*— Իսկ ես,— ասաց վառարանը,— շատ էի ուրախանում, երբ մեջս ցախ էին դնում ու վառում, մարդիկ նստում էին շուրջս, զրուցում, երգում և ես էլ հրճվանքից աղմկում էի և տաքացնում նրանց։*

*— Բարեկամներս,—ասաց դույլը,—ե՞րբ պետք է մեզ հավաքեն, տանեն մի գործի դնեն։ Այդ պահին դրսից ինչ-որ ձայներ լսվեցին։ Վառարանը լռությունը լարեց, թավան շարժվեց դեպի դուռը։ Անտակ դույլն անգամ փորձեց գլորվել։*

*— Կարծես թե գալիս են,— շշնջաց նա,— ես առաջինն եմ, խնդրում եմ շառարկեք։*

## Սուրիկը գիրք է կարդում

*Ա. ՍԱՐՈՅԱՆ* — *Նկ. Ա. ՉԻՖԼԻԿՅԱՆԻ*



Ուշ է, բայց դեռ Սուրիկն արթուն
Տեղում նստել, գիրք է կարդում.
«Ժամանակով կատուն ճոն էր,
Շունն էլ գլխին գդակ չուներ...»
Կարդում է նա ու տողերում
Փոքրիկ մատն է տանում-բերում:
Չի սխալվում ոչ մի անգամ,
Չէ՞ որ վարժ է կարդում այնքան։
— Սուրիկ, ասա,
Ի՞նչ տառ է սա,—
Հարցրեց հյուր եկած քեռին,
Ցուցամատը դրած տառին:
— Չեմ ճանաչում տառերը դեռ,—
Պատասխանեց Սուրիկը մեր:
Ես դեռ փոքր եմ, հինգ տարեկան,
Դեռ չեմ դարձել դպրոցական:
Ես դեռ միայն կարդալ գիտեմ,
Տառերն հետո կսովորեմ:

## ԱՐԱՐԱՏՅԱՆ ԴԱՇՏՈՒՄ

*Վ. ԿԱՐԵՆՑ*

Այգիներում կանգնած պահակ՝
Բարդիներն են խշշում.
Արարատյան արևի տակ՝
Աշո՜ւն, ոսկի աշո՜ւն:
Փշատենին թեքված առվին՝
Առվի հետ է գնում,
Եվ դեղձերը պոկվում ծառից,
Տաք հողին են ընկնում:
Կանաչ, կանաչ թփերի մեջ
Ողկույզները պես-պես
Վառվում են վառ բոցով անշեջ,
Քաղցր ժպտում են քեզ:
Լի ծփում են այգիներում
Ամեն մարգ ու ածու,
Ավտոներն են գալիս-գնում,
Կողովներով լեցուն:
Եվ կողով ու զամբյուղ առած՝
Մանուկները գյուղի
Հավաքում են միրգը առատ,
Պարգևները հողի:
Այգիներում կանգնած պահակ
Բարդիներն են խշշում.
Արարատյան արևի տակ՝
Աշո՜ւն, ոսկի աշո՜ւն:

Ռ. ԿԻՏԻԵՎԱ

Նկ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ




Արդեն մութ էր, երբ Վանիկը դուրս եկավ անտառից՝ մի ձեռքում սնկով լի կողովը, մյուսում՝ մոշով լցված դույլը։ Նա հոգնել էր։ Նստեց կանաչ խոտի վրա, բացեց ուտելիքի կապոցը, դրեց մի տափակ քարի վրա և սկսեց ախորժակով հաց ու պանիր ուտել։ Նա գոհ էր այսօրվա իր հաջող աշխատանքից։ Տատիկը սունկ շատ էր սիրում, նրա պատվերը կատարված է, մայրիկի համար էլ մոշ էր տանում։ Երբ ուտելը վերջացրեց, ուզում էր գնալ, բայց նրա ուշադրությունը գրավեց քարի վրայի անսովոր մակագրությունը։ Նա զարմանք կորեց... Հաճախ էր նույն տեղով անցել, նստել նույն քարի մոտ, սակայն չէր հիշում, որ նրա վրա որևէ բան գրված լիներ։ Իսկ հիմա քարի վրա մակագրված էր.

«Շարժիր ինձ դեպի ձախ՝ կգտնես առաջին հավերժական գանձը, շարժիր աջ՝ կգտնես երկրորդ հավերժական գանձը, նետիր վերև՝ կգտնես երրորդ գանձը։ Առանց այդ գանձի ոչ ոք չի կարող իսկական մարդ լինել»։

— Սա ի՞նչ հրաշք է։ Մի՞թե երազ է,— մտածեց Վանիկը։

Հետաքրքրությունը տանջում էր նրան։ Նա չորս կողմը նայելով և համոզվելով, որ իրեն ոչ ոք չի տեսնում, ձեռքը զգուշությամբ մեկնեց դեպի քարը, ու դանդաղ շարժեց տեղից։

Վանիկի զարմացած աչքերի առջև մի անցք բացվեց։ Նրա մարմնով սարսուռ անցավ։

— Մտնե՞լ, թե ոչ,— մտածեց նա։— Ինչ էլ որ լինի, պետք է մտնեմ։

Նա սկսեց կուզեկուզ քայլել այդ ահավոր անցքով և ինքն իրեն հուսադրել։ Չէ՞ որ պիոները ոչ մի բանից չպետք է վախենա։ Անցքը քանի գնում լայնանում էր, Վանիկը զգալով, որ կարելի է արդեն կանգնել, գլուխը բարձրացրեց։ Այդ ժամանակ, ինչ-որ տեղից մի ուժեղ լույս ընկավ նրա աչքերին։ Նա աչքերը փակեց և երբ նորից բացեց, շուրջը անթափանց խավար էր տիրում։

— Այս ի՞նչ խավար է,— շշնջաց նա,— որտե՞ղ եմ ես։

Վանիկը խավարի մեջ խարխափելով առաջ էր գնում... Աննկատելիորեն անցքը չքացավ։ Վանիկի աչքերն արդեն վարժվել էին մթությանը, և նա կարողանում էր պարզ տեսնել շենքերը և նրանց բարձր ծխնելույզները։ Հանկարծ մի երկաթյա դուռ բացվեց, և նա ներս մտավ։

«Իսկ ո՞րտեղ է գանձը»,— մտածեց Վանիկը...

— Շուտով կգտնես,— լսվեց մի բարձր ձայն։ Վանիկն արագ չորս կողմը նայեց։ Ոչ ոք չկար։ Բայց այն ո՞վ է, որ իր մտածածը լսեց։

— Ո՞վ կա այստեղ,— գոչեց Վանիկը։

— Այդ ես եմ, առաջին գանձը,— նորից խոսեց աներևույթը։

— Դո՞ւ, իսկ ի՞նչ է քո անունը,— առաջին գանձ,— բացագանչեց Վանիկը։

— Իմ անունը չեմ ասի, դու ինքդ պետք է գուշակես։

— Ե՞ս,— զարմացավ Վանիկը։

— Այո, դու։

Հանկարծ շուրջը միանգամից լուսավորվեց և Վանիկի առջև բացվեց մի հսկայական արհեստանոց, որտեղ դազգահների մոտ աշխատում էին կաշվե գոգնոցներ կապած մարդիկ։ Նրանք ձև էին տալիս մետաղին։ Զնգում էին մուրճերը, բոցկլտում էին շիկացած մետաղի կտորները։ Ամենուրեք եռում էր աշխատանքը։ Վանիկը հիացած դիտում էր այդ բրոնզագույն մարդկանց առնական դեմքերը, հետևում նրանց հզոր ձեռքերի հարվածներին։

— Այ քեզ աշխատա՜նք,— բացագանչեց Վանիկը։

— Տեսնո՞ւմ ես, դու արդեն ասացիր իմ անունը,— խոսեց աներևույթը։

— Դո՞ւ ես այդ գանձը։

— Այո՛, ես, առաջին հավերժական գանձը՝ աշխատանքը։ Առանց աշխատանքի մարդն ապրել չի կարող։

Վանիկը ոգևորված էլի ինչ-որ բան էր ուզում հարցնել, բայց այդ ժամանակ ամպերը դղրդացին, և սկսեց հորդառատ անձրև տեղալ։

Վանիկը դեռ աչքերը չէր թարթել, երբ նորից հայտնվեց կախարդական քարի մոտ։

— Ես գտա առաջին հավերժական գանձը,— ուրախ բացականչեց նա։— Հիմա տեսնենք ո՞րն է երկրորդը։

Նա քարը շարժեց դեպի աջ։ Բացվեց նույն անցքը։ Վանիկը գնաց այդ անցքով և դարձյալ մի բաց, լուսավոր դաշտ դուրս եկավ։ Անծայրածիր, ոսկեզօծ դաշտում աշխատում էին ծղոտե գլխարկ դրած մարդիկ։ Լսվում էր տրակտորի հռնդոցը, կալսիչի չխչխկոցը, աղջիկներն անհոգ և ուրախ ծիծաղն ու պիոներների զվարթ երգը։

Վանիկը լայն բացած աչքերով հետևում էր նրանց։

— Ես արդեն գիտեմ, թե ի՛նչ է քո անունը, երկրորդ հավերժական գանձ։ Դու աշխատանքն ես, ճի՞շտ է,— բացականչեց Վանիկը։

— Ապրե՛ս, հեշտությամբ գտար իմ անունը,— լսեց նա։

Նորից հորդառատ անձրև տեղաց և Վանիկը դարձյալ հայտնվեց կախարդական քարի մոտ։

— Քանի որ դու երկրորդ հավերժական գանձն էլ գտար, ապա երրորդն էլ փնտրիր։ Եվ քարն ինքն իրեն սրընթաց թռավ վեր... Վանիկը չզարմացավ։ Նա այսօր վարժվել էր բոլոր հրաշքներին։ Նա նորից մտավ անցքը։ Անցավ հիանալի սյունազարդ շենքերի մոտով։ Տեսավ, թե ինչպես գրքեր ու պայուսակներ բռնած մարդիկ շտապ անցնում էին փողոցներով, նրանց աչքերում փայլում էր ժպիտը։ Վանիկը քարե աստիճաններով վեր բարձրացավ և մտավ քանդակազարդ մի հսկա դահլիճ։ Այնտեղ սեղանների մոտ, տարբեր հասակի մարդիկ նստած, լուռ աշխատում էին։ Փոքրիկ տղաներն ու աղջիկները կավից քանդակում էին զանազան թռչուններ և կենդանիներ, տարիքավորները խորասուզված ինչ-որ բան էին գրում։

— Երրորդ հավերժական գանձ, քեզ կոչում են աշխատանք,— խոսեց Վանիկը։

— Այո, ես աշխատանքն եմ,— բացականչեց աներևույթը։

— Ուրեմն ես արդեն գտա երեք հավերժական գանձերը,— ուրախ ասաց Վանիկը։

Ու նորից փայլատակեց կայծակը և հորդառատ անձրև տեղաց։ Վանիկը նորից կանգնել էր կանաչ խոտի վրա, կախարդական քարի մոտ...



— Ի՞նչ է նշանակում այս ամենը։ Չէ՞ որ հիմա պետք է ուշ երեկո լիներ... Բայց լույս է... Պայծառ արևի ճառագայթները տարածվել էին ամենուրեք։ Իսկ քարի վրայի մակագրությունը անհետացել էր... Վանիկը գրպանից հանեց մի կտոր կավիճ, նստեց խոտի վրա և զգուշությամբ քարի վրա գրեց. «Աշխատանք, աշխատանք և աշխատանք — ահա երեք հավերժական գանձերը»։





# ՊԱՏՄՎԱԾՔ

## Շաքարի մասին

Ա. ՇԱՀԱԶԻԶՅԱՆ

Նկ. Վ. ՊՈՂՈՍՅԱՆԻ

Մանկությունից սկսած, բոլորս էլ քաղցր ենք սիրում, մանավանդ՝ շաքար։

Մեր սննդի մեջ օրը մի քանի անգամ մենք քաղցր ենք գործածում։ Նա պահված է տեսակ-տեսակ համեղ խմորեղենների, պաղպաղակի և մեր սիրած բոլոր քաղցրավենիների մեջ։ Ոչ մեկիս մայրիկը առանց շաքարի գործը գլուխ չի բերի։

Մինչև շաքարի գյուտը մարդիկ մեղր են օգտագործել։ Հեռավոր ժամանակներում, անտառներում վայրի մեղուներ շատ են եղել։

Հետագայում մարդիկ սովորեցին շաքար ստանալ։ Հարավային երկրներում՝ շաքարեղեգնից, իսկ հյուսիսային երկրներում՝ շաքարի ճակնդեղից։

Շաքարեղեգնը բազմամյա բույս է, և կարելի է տարածել միայն պատվաստի միջոցով։ Նա աճում է արևադարձային ճահճուտներում, Միջերկրական ծովի և Ատլանտյան օվկիանոսի ափերին՝ Իսպանիայից մինչև Նորվեգիա ընկած տարածության վրա։

Նրա ցողունը հասնում է մոտ վեց մետր բարձրության, իսկ տերևները նման են եգիպտացորենի տերևներին։ Ցողունի միջուկը, որ շատ հաճույքով ծամում են երեխաները, քաղցր է։ Հենց դրանից էլ ստացվում է փափուկ, փխրուն, փոքր ինչ դեղնավուն գույնի շաքար և ծորամեղր։

Շաքարն առաջին անգամ պատրաստվել է Հնդկաստանում, ապա՝ Չինաստանում։ Շաքարին հնդիկները անվանել են «ակկար»։ Հետո մի քիչ փոփոխված ձևով անցել է մյուս երկրներին։ Այսպես օրինակ՝ ռուսները շաքարին ասում են «սախար», հայերը՝ «շաքար», հույները՝ «զախարի», անգլիացիները՝ «շուգր» և այլն։

Հնդիկները ցանկանում էին գաղտնի պահել շաքարի գյուտը։ Նրա մասին քուրմերը ստեղծել էին առասպելներ, հավատացնելով մարդկանց, որ շաքարը որպես աստվածային պարգև՝ ընկնում է ուղղակի երկնքից։

Նշանավոր ճանապարհորդ Մարկո Պոլոն իր օրագրերում շատ է գրում շաքարի մասին, որ նա տեսել է Չինաստանում դեռևս 13-րդ դարում։

Հնդկաստանում շաքարի գյուտը արվել է մեզանից ավելի քան 2000 տարի առաջ։ Ալեքսանդր Մակեդոնացու զինվորները, որ արշավանքի ժամանակ հասել էին Հնդկաստան, առաջին անգամ այնտե՛ղ առան շաքարի համը։ Իսկ զորքին ուղեկցող հույն բուսաբան Թեոֆրաստը մանրամասնորեն նկարագրեց շաքարեղեգնը՝ այն հրաշալի բույսը, որից ստացվում էր այդ «երկնային պտուղը»։

Մեր հայրենիքում շաքարեղեգնը հաջողությամբ աճում է Տաջիկստանում գտնվող Վախշի հարթավայրում և Ուզբեկստանում։ Նա մշակվում է գլխավորապես ռոմ ստանալու համար։ Մեզ մոտ շաքարը ստացվում է շաքարի ճակնդեղից, որը նույնքան հին է, որքան շաքարեղեգնը։

Կոլտնտեսությունները հարյուր հազարավոր հեկտար տարածության վրա շաքարի ճակնդեղ են մշակում։

Ճակնդեղի վայրի տեսակը կշռում է ընդամենը 20 գրամ, իսկ նրանց մշակածը կշռում է մեկ ու կես կիլոգրամից ավել։

Մեր անվանի ճակնդեղագործները մի քանի հարյուր ցենտներ ճակնդեղի բերք ստանալու հետ միասին, հոգ են տանում, որպեսզի ավելանա նաև ճակնդեղի շաքարայնությունը։ Նրանց օգնում են գիտնականները, 150 տարվա ընթացքում ճակնդեղի շաքարայնությունը ավելացել է չորս անգամ։

Աշխարհում արտադրվող շաքարի կես մասը ճակնդեղից է ստացվում։ Շաքարի առաջին գործարանը մեր հայրենիքում հիմնվել է 1800 թվականին, նախկին Տուլայի նահանգի Ալյաբևո գյուղում։ Նա հասարակ սարքա-

*վորում ուներ և տեղավորված էր մի խրճիթում:*

*Սովետական Միությունում այժըմ կան շաքարի մեծ ու փոքր բազմաթիվ գործարաններ, որոնք միասին անցյալ տարի 7 օրում այնքան շաքար արտադրեցին, որքան արտադրվել է 1920 թվականի ամբողջ տարվա ընթացքում:*

*Այդպիսի գործարաններից մեկըն էլ գտնվում է մեր ռեսպուբլիկայում՝ Սպիտակավանում:*

*Հավանաբար դուք չեք եղել այնտեղ և չեք տեսել, թե ինչպես է ճակնդեղը դառնում շաքարավազ: Այդ շատ հետաքրքրական է:*

*Գործարանում աշխատանքային եռուզեռն սկսվում է աշնանը, երբ Սպիտակի, Ախուրյանի, Կիրովականի շրջանների կոլտնտեսություններից անընդհատ հոսանքով, գնացքով ու ավտոմեքենաներով դեպի գործարան է փոխադրըվում ճակնդեղի առատ բերքը: Հոկտեմբեր ամսին նրա շրջակայքում ճակնդեղի իսկական բլուրներ են գոյանում: Բեռնաթափողներից մի երկու հոգի բահով ճակընդեղները հրում են դեպի գործարան տանող սրընթաց առուն: Նրանք այստեղ իրար հրելով, բադիկների պես մեկ սուզվելով, մեկ բարձրանալով, հողակոշտերից ու ցեխից մաքրված ընկնում են գործարանի առաջին հարկը:*

*Այստեղից արդեն սկսվում է ճակընդեղների զարմանալի ճանապարհորդությունը այս բարդ մեքենաների աշխարհում, որ հասնում է մոտ հիսուն կիլոմետրի: Եվ ի՜նչ փորձությունների ասես, որ նրանք չեն հանդիպում այստեղ:*

*Լայն խողովակների միջով, օդի ճնշման շնորհիվ, առաջին հարկից սլանում են երկրորդ հարկը, և ձկների նման, մեկը մյուսի հետևից թափվում են լվացման տակառների մեջ: Այստեղ լավ մաքրվելուց հետո, հարմարանքների օգնությամբ, բարձրանում են շենքի վերջին հարկը, որտեղ դրված է ավտոմատ կշեռքը:*

*Այսպիսի կշեռք նույնպես տեսած չեք լինի: Նա առանց որևէ մեկի օգնությամբ մի րոպեում կշռում է հինգ հազար կիլոգրամ ճակնդեղ, գրանցում հաշիվը և կշռածը լցնում է փոխադրող մեխանիզմների մեջ, ապա շարունակում իր աշխատանքը:*

*Կտրող-մանրող մեքենաների տակից ճակնդեղները դուրս են գալիս բոլորովին իրենց տեսքը կորցրած: Նրանք մակարոնի նըման բարակ ձողիկներ են դարձել: Այնքան բարակ, որ հարյուր գրամը ծայրը ծայրին դնելով, կարելի է հասցնել 22 մետրի:*



*Դիֆուզորներ կոչվող մեծ կաթսաներում, որոնցից յուրաքանչյուրը տեղավորում է 34 ցենտներ հումք, այս մանրած ճակընդեղը եփվելով քամում է իր քաղցր հյութը, իսկ մնացորդը թափվում է դուրս և օգտագործվում որպես անասնակեր:*

*Ահա այս քաղցր հյութը գործարանի ցեխերում ճամփորդելով, կաթսայից կաթսա անցնելով, հըմուտ վարպետների ու քիմիկոսների հսկողությամբ, վերամշակվում է կրաջրի, ածխաթթու գազի և այլ նյութերի մեջ, պնդանում, դառնում բյուրեղ:*

*Այնուհետև հասնում է ամենահետաքրքրական պահը: Մեր աչքի առաջ է կենտրոնախույս մեքենան, որի անիվը պտտվում է խելահեղ արագությամբ, այնքան արագ, որ մեզ թվում է, թե նա անշարժ է, այնինչ մեկ րոպեում հազար պտույտ է կատարում: Այս մեծ արագության շնորհիվ այդ քաղցր բյուրեղը կարծրանում է և քսվելով երկաթե մաղերին՝ սկսում է ավազի պես մանրանալ: Հինգ-վեց րոպեում մաղվում է մոտ 360 կիլոգրամ շաքարավազ:*

*Ա՛յ, թե ինչ դարձավ ճակնդեղը և ինչպես վերջացավ շաքարի պատմությունը:*

## ԿԱՑՆԻ ԴԱՏԸ

*Ա. ՇԻՐՈՅԱՆ*

Հավարն ընկավ անտառում,
— Հասե՞ք, մեզ է կոտորում,
Ծառերն այսպես գոչեցին.
— Ի՞նչ են կոչում այդ ցեցին:
— Նրա անունն է կացին,—
Պատասխանեց Ակացին:—

Միշտ թռչում է ձախ ու աջ,
Խփում է ետ ու առաջ:
Գլուխն է կուռ երկաթից,
Պոչն էլ շինած է փայտից:
— Օ՜, բե մեզնից է պոչը:
Ավելորդ է ձեր կոչը:




# Գաղտնիքների երկիրը

Ա. ՕՀԱՆՅԱՆ

Նկ. Վ. ՊՈՂՈՍՅԱՆԻ

Գաղտնիքների երկիր, առեղծվածների երկիր, այսպես են անվանել գիտնականները՝ Անտարկտիդան, վեցերորդ աշխարհամասը։

Եվրոպայից մեկ ու կես անգամ մեծ մի ցամաք է Անտարկտիդան, բայց այստեղ դեռ ոչ մի մարդ մշտական բնակություն չի հաստատել։ Անտարկտիդայի կենտրոնական մասը մի լայնատարած հարթավայր է՝ ծածկված ձյունով ու սառույցով։ Սառույցների հաստությունը տեղ-տեղ հասնում է 2200 մետրի։ Այստեղ գիշեր ու ցերեկ մոլեգնում են ձյունախառն բուքերն ու մրրիկները։ Ջնաբուքը ժանգոտած մետաղը դարձնում է փայլուն, մաշում է նավերի առագաստները, քերում նրանց փայտյա մասերը։ Այստեղ անգամ հրաշեկ լավա ու բոց ժայթքող հրաբուխների գագաթներին սարսափելի սառնամանիք է տիրում։

Բայց զարմանալի է ու հանելուկային, որ Անտարկտիդայում պատահում են սառույցից ազատ տարածություններ, ուր կան կարմիր լճեր, կապույտ լճեր։ Այդ գունավոր ջրերի ջերմաստիճանը թույլ է տալիս, որ մարդիկ նույնիսկ լողանան այնտեղ։

Արդյոք հրաբուխնե՞րն են առաջացրել այդ գունագեղ լճերը, թե՞ ստորերկրյա ածխաշերտերում ծագած հրդեհները՝ դրանք դեռ Անտարկտիդայի գաղտնիքներն են։

Արդյոք Անտարկտիդան ցամա՞ք է, թե կղզիների մի խումբ՝ սառցե ծածկոցի տակ,— ահա այդ գաղտնիքն են պահում հզոր սառույցները։

Անտարկտիդան դեռ չի բացել նաև իր ընդերքի հանքային հարստությունների գաղտնիքները։

Իսկ նրա ընդոստ մթնոլորտը հաճախ չի ենթարկվում ռադիոալիքների տարածման օրենքներին, արգելակում է ռադիոհաղորդումները և ռադիստներն ու գիտնականները դեռ չեն կարողացել գտնել այդ առեղծվածի պատճառը։

Այսպիսի շատ գաղտնիքներ պիտի բացահայտեն սովետական գիտնականները, որոնք 1955 թվականի վերջերին Անտարկտիդայում հիմնել են «Միրնի» կոչված գիտահետազոտական ավանը և սկսել գիտական աշխատանքը։

Անտարկտիդայում գիտահետազոտական կայաններ հիմնել են նաև՝ ԱՄՆ-ի, Անգլիայի, Չիլիի, Արգենտինայի, Ճապոնիայի, Ֆրանսիայի, Ավստրալիայի և Նոր Զելանդիայի գիտնականները (տես սխեմատիկ քարտեզը)։

Շուտով կսկսեն աշխատել սովետական երկու գիտահետազոտական ավաններ էլ՝ «Սովետսկին» և «Վոստոկը»։

Այժմ արդեն Անտարկտիդայում սկսվել է ձմեռը։ «Միրնիի» շենքերը մինչև կտուրները թաղվել են ձյան շերտերի տակ, իսկ բևեռային գիշերվա թանձր խավարը սև վարագույրի պես փռվել է սառույցների ու ձյուների վրա։

Բայց հոգ չէ։ Մեր գիտնականներն արդեն ստեղծել են աշխատանքի համար բոլոր անհրաժեշտ պայմանները։

«Օբ» և «Լենա» դիզել-էլեկտրանավերը նրանց համար բերել են տրակտորներ, ինքնաթիռներ, ուղղաթիռներ, ապարատներ, գործիքներ, հագուստեղեն, սննդամթերք և ամեն ինչ։

Տրակտորային գնացքին կցած սահնակների

վրա նստած՝ գիտնականները անցնում են հարյուրավոր կիլոմետր տարածություններ՝ ուսումնասիրելով սառցադաշտերը, ռելյեֆը, երկրաբանական կառուցվածքը, հանքային հարստությունները, բուսական ու կենդանական աշխարհները։ Միրնիի օդանավակայանում իջնում ու օդ են բարձրանում սովետական ինքնաթիռներն ու ուղղաթիռները։ Նրանք գիտնականներին ու բեռներ են փոխադրում և հետազոտություն են անում։

Միրնիի էլեկտրակայանը էներգիա է տալիս գիտական լաբորատորիաներին, լուսավորում է ավանը, ջրաջեռուցման միջոցով տաքացնում տները։ Հզոր ռադիոկայանը մշտական կապ է պահպանում Մոսկվայի հետ։ Ավանում գործում է հիսուն հեռախոս ունեցող ավտոմատ հեռախոսային կայանը։

Ճշգրիտ գործիքները ավտոմատ կերպով գրի են առնում օդի ճնշումը, խոնավությունը, ջերմաստիճանը, քամու ուղղությունն ու արագությունը։ Անընդհատ աշխատում են ինքնագրող ապարատները։ Բաց են թողնվում ռադիոզոնդեր, որոնք հասնում են մինչև քսան կիլոմետր բարձրության։

Գիտնականները գրոհում են։ Անտարկտիդայի կատաղի բնությունը և սառույցներն ու բևեռային խավարը այլևս անզոր են պահպանելու դարավոր գաղտնիքները։




ՍՍՌՄ, ԱՆԳԼԻԱ, ԱՐԳԵՆՏԻՆԱ, ՉԻԼԻ, ՃԱՊՈՆԻԱ, Ն.ԶԵԼԱՆԴԻԱ, ԱՄՆ, ՖՐԱՆՍԻԱ, ԱՎՍՏՐԱԼԻԱ, ՆՈՐՎԵԳԻԱ
● ԳՈՐԾՈՂ ԿԱՅԱՆՆԵՐ ○ ՆԱԽԱԳԾՎՈՂ ԿԱՅԱՆՆԵՐ

Անտարկտիդայի տեղական «բնակիչներից» մեր գիտնականների հետ ամենից շուտ բարեկամացել են պինգվինները։ Նրանք անվախ մոտենում են մարդկանց, լսում երգն ու նվագը, զվարճացնում նրանց։

Իզուր չէ, որ Միրնիի կինո-թատրոնը կրում է «Պինգվին» անունը։



Սովետական էքսպեդիցիան Անտարկտիդայի Միրնի ավանում։
Լուսանկար՝ Ա. ԿՈԶԵՎՆԻԿՈՎԻ (ՏԱՍՍ)



Պերճ Զեյթունցյան

*Փոքրիկ Ռուբիկն անպայման* ուզում է որևէ բանով աչքի ընկնել, հայտնի մարդ դառնալ, բայց թե ի՞նչ ձևով՝ չգիտի: Նա չարություն անելով է ձգտում ուշադրություն գրավել: Բայց չէ՞ որ նա լավ տղա է: Այդ պատճառով էլ անկարգություն անելու նրա փորձերն անհաջող են լինում: Երբ նա ընկերների հետ միասին պատրաստում է դասերը և «լավ» գնահատական է ստանում, նոր է հասկանում, որ այդպես էլ կարելի է աչքի ընկնել, պետքական լինել իր և ուրիշների համար:

Այս բոլորի մասին պատմվում է «Ռուբիկը» պատմվածքում:

Ծույլ աշակերտներ Վաչիկն ու Սուրիկը փախչում են թվաբանության դասից: Էլի էր պատահել, որ նրանք առանց թվաբանական խնդիրները լուծելու դպրոց էին եկել, բայց այսօր պետք էր գլուխը ազատել խայտառակությունից: Դրա համար էլ նրանք փախչում են դասից. Վաչիկն ու Սուրիկը դպրոցում են թողնում իրենց վերարկուները, գլխարկներն ու գրքերը: Նրանց նույնիսկ դուր է գալիս փախչելը: Բայց մի պահ միայն: Շատ անախորժություններից հետո երկուսն էլ հասկանում են, որ իրենց արածը վատ բան է և հանգստանում են միայն այն ժամանակ, երբ նորից ոտք են դնում սիրելի դպրոցի շեմքին:

# „ՆՐԱ ԱՌԱՋԻՆ ԸՆԿԵՐԸ“

Ուսուցողական շատ բան կա «Վաչիկի առավոտը» պատմվածքում: Փոքրիկ Վաչիկը ծույլ է, քմահաճ: Նա ոչ մի բանի, նույնիսկ իր ուտելու մասին էլ չի մտածում: Եվ ինչո՞ւ մտածի որ, թող հայրն ու մայրը մտածեն: Կարդում ես պատմվածքն ու վշտով մտածում. եթե այդպիսին է Վաչիկի առավոտը, ի՞նչ կլինի նրա վերջը: Պարզ է, որ վատ, շատ վատ կլինի:

«Նրա առաջին ընկերը» գրքում կան պատմվածքներ նաև կապիտալիստական երկրների կյանքի մասին:

Ահա սուլիչներ է ծախում մի նիհար, 10-ամյա տղա («Նա ծախեց սուլիչները»): Ծանր աշխատանքը նրա մորն անկողնուն է գամել, տան հոգսը ընկել է անչափահաս տղայի ուսերին: Տղան դառնությամբ մտածում է. «Ինչո՞ւ բոլորն ամեն ինչ ունեն, իսկ ինքը, նույնիսկ հայր չունի»: Նա էլ կուզեր իր հասակակիցների նման խաղալ, դպրոց գնալ, ուրախ էքսկուրսիաներ կատարել. բայց նրան այլ բախտ է վիճակվել: Նա հարկադրված է օրերով քայլել փողոցներում ու իր մանկական զիլ ձայնով կանչել «սուլիչնե՜ր, սուլիչնե՜ր»:

Մահմեդը վաղուց է, ինչ գործազուրկ է («Նվերը»), նա չգիտի ինչպես անցկացնել ժամանակը. դրա համար էլ ատում է ցերեկը: Նրանց տանը լիքը երեխաներ կան, իսկ ուտելու՝ ոչինչ չկա: Մահմեդը երբեմն սիրում էր հարցնել. «հաց կա՞» և թեպետ գիտեր, որ պատասխանը բացասական է, բայց նրան «հաճելի էր. այդպիսի խոսակցությունը... Գոնե խոսում են հացի մասին»: Ահա թե մարդը ինչով է, երբեմն, կշտանում:

Անկեղծությամբ է գրված «Նրա առաջին ընկերը» պատմվածքը: Զար, անտուն, որբ տղա Աբդուլան, որը ահ ու սարսափ է ազդում շրջապատի բոլոր երեխաների վրա, անճանաչելի է դառնում. երբ ձեռքն է առնում գիրքը և սկսում է սովորել: Նա այրվում է գիտելիքներ ձեռք բերելու ցանկությունից: Ինչպիսին կլիներ այդ տղան, եթե կյանքն այդպես դաժան չլիներ նրա նկատմամբ, եթե նա ջերմության ու հոգատարության հանդիպեր:

«Պատվիրակը», «Բեռնակիրը», «Նոր տարվա գիշերը» և այլ պատմվածքներ ժողովածուի լավագույն գործերից են:

Այս գիրքը գրել է դպրոցը դեռ նոր ավարտած շնորհալի պատանի Պերճ Զեյթունցյանը: Այդ գործերից մի մասը դուք անշուշտ առաջին անգամ կարդացել եք մեր ամսագրում:

Կարդացեք այս հետաքրքրական գիրքը:

Գ. ԽՈՍՏԻԿՅԱՆ



*«Պատվիրակը» պատմվածքի իլյուստրացիան՝ նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

## ԴԵՐՁԱԿՈՒՀԻ ԹՌՉՈՒՆԸ

Այս փոքրիկ, վառ ներկված երկարապոչ և սրակտուց թռչունը բնակվում է Հնդկաստանում, Ցեյլոնում և Բիրմայում: Բնի անսովոր կառուցվածքի համար նրան անվանում են «դերձակուհի»:

Կտցի և ոտքերի օգնությամբ թռչունը մոտեցնում է տերևների ծայրերը կամ մեկը մյուսի վրա դնում, կտցով ծակում ու «կարում է» թելով, որն հյուսված է սարդոստայնից կամ բուսական բմբուլից:



Երբեմն նա բավարարվում է մի մեծ տերևով՝ «կարելով» ծայրերը: Բայց կան բներ, որ 12 տերևից են: Ստացվում է փոքրիկ ծրարի պես մի բան, որի ներսից թռչունը բմբուլից և բամբակից բույն է հյուսում:

Սովորաբար «դերձակուհին» իր բույնը շինում է գետնից բարձր, փոքրիկ ծառերի, թփերի, երբեմն էլ սենյակային բույսերի վրա, որոնք դրված են վերանդայում:

«Դերձակուհին» սնվում է միջատներով, առավելապես մրջյուններով, ճպուռներով և բրբուռներով:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*

*Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ*






„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 06771: Պատվեր 1022: Տիրաժ 5000: Տպագրական 4,1 մ.: Ստորագրված է տպագրության 24/X 1956 թ.: Գինը 2 ռ.:*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության Գլխավոր վարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փ. № 65:*




# Հրավեր

Խոսք՝ Ս. ՄԿՐՏՉՅԱՆԻ Երաժշտություն՝ Ջ. ՎԱՐԴԱՊԵՏՅԱՆԻ



























## ՁԵԶ ՄՈՏ ԿԱ՞Ն ԱՅՍՊԻՍԻՆԵՐԸ

Նկ. Գ. ԱՐԱՄՅԱՆԻ



Նա ֆուտբոլիստ է...



և բռնցքամարտիկ,



ունի լավ լսողություն,



տեսողություն,



հարուստ բառապաշար




և ապա «տոնական» տեսք ունեցող տետրակներ



## ՑՆԾՈՒԹՅՈՒՆ

Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ

Աշխարհը ծաղկել,
Հրճվում է անհուն,
Կարմիր են հագել
Ե՛վ փողոց, և՛ տուն...
Ամեն տեղ շարքեր,
Շարքեր կուռ, անպարտ,
Փայլում են դեմքեր
Ուրախ ու զվարթ։
Մեծ տոն է, հանդես,
Դրոշներ բոսոր,
Ժպտում են կարծես
Շենքերն էլ այսօր...
Մի փոքրիկ աղջիկ,
Դրոշը ձեռքին,
Դիմում է մեղմիկ
Անուշ մայրիկին.
— Մայրիկ, մայրիկ, տե՛ս,
Այս ո՞վ է եկել,
Մեր փողոցն այսպես
Զարդարել, ներկել...
— Ոչ ոք, բալիկ ջան,
Ոչ ոք չի եկել,
Այդ Հոկտեմբերյան
Արևն է զուգել.
Մեծ Հոկտեմբերն է
Նորից եկել հյուր,
Նա է զարդարել
Աշխարհն ընդհանուր...